# ՄԵՐ ԱՇՈՒՆԸ

*ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ*

Լուսնի ծիծաղն ինքը վկա.
Մեր աշնան պես աշուն չկա։ –

Այս աշունը եկավ ոսկով.
Խաղաղ կյանքի՝ մի նոր խոսքով,
Ժպիտներով արեգական.
Եկավ սրտի թրթիռներով,
Լուսնին հասած հրթիռներով,
Սեպտեմբերով իր պատմական։

Եկավ շուքով ու շշուկով,
Տերևների դեղին բուքով,
Հրնվանքներով անեզրական.
Եկավ ուրիշ տեսակ զարդով,
Ատոմային սառցահատով,
Երազներով տիեզերական...

Եկավ առատ բերքի տոնով,
Եկավ ուրախ երգի տոնով,
Հանդեսներով անզուգական.
Եկավ շռայլ բերք ու բարով,
Այս տոնական Հոկտեմբերով,
Նոյեմբերով այս տոնական։

Լուսնի զարմանքն ինքը վկա,
Մեր աշնան պես աշուն չկա։



Նկ. Գ. ՄԱԼԱՅԱՆԻ

№ 11 1959 թ.
ՆՈՅԵՄԲԵՐ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



# ՓԱՐԻԶՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Վ. ՕՐՋՈՆԻԿԻՁԵ

Բաթումից մեկնող շոգենավը բարձրացավ մի սակավախոս և, ըստ երևույթին, շատ աստվածապաշտ թուրք։ Մեկնելուց առաջ շոգենավը զննող ոստիկաններն անուշադիր վերաբերվեցին այդ շեկամորուք ուղևորին։ Ու նա հոնքերը կիտած, շրթունքները շարժելով ու տերողորմին գցելով անցավ տախտակամածով և իջավ նավամբար։ Ասենք՝ եթե նույնիսկ նրան կանգնեցնեին, ցույց կտար իր անձնագիրը և փաստաթղթեր, որոնք կվկայեին, որ նա գնում է հայրենիք։

Ճանապարհին ուղևորները հաճախ էին փոխվում։ Շատ նորանոր մարդիկ եկան, և հազիվ թե որևէ մեկը հիշեր՝ ով է նավ նստել Բաթումիում։

Երբ մի պայծառ առավոտ շոգենավը կանգ առավ Մարսելի նավահանգստում, մյուս ուղևորների հետ միասին ցած իջավ նաև մի գունատ, թխահեր մարդ. հագին սև պիջակ ու սպիտակ շալվար, գլխին՝ ծղոտե գլխարկ։ Նա ոչ մի ծանրոց չուներ։ Ափ իջնելով՝ առանց շտապելու շուրջը նայեց և վստահ քայլերով գնաց դեպի քաղաք։

Մի օր հետո այդ մարդն արդեն Փարիզում էր։ Նա շտապում էր. որքան կարելի է շուտ պետք է հասներ Մարի Ռոզ փողոցը, որ գտնվում էր քաղաքի ծայրամասում։

Եվ ահա Կամոն նստած է Վլադիմիր Իլյիչի դիմաց՝ փոքրիկ, լուսավոր խոհանոցում, որն այստեղ ծառայում է որպես հյուրասենյակ։ Ամենաերկար և ամենասրտագին զրույցները տեղի են ունենում հենց այստեղ, էժանագին մոմլաթով ծածկված այս հասարակ սեղանի շուրջը։

Նադեժդա Կոնստանտինովնան անկյունում զբաղված է տնտեսական գործերով։ Երբեմն նա մոտենում է սեղանին, սիրալիր ժպտալով մեկնում փոքրիկ վազան, որի մեջ հատկապես կովկասյան հյուրի համար գնված նուշ է լցված։

Իր մասին պատմելը դժվար բան է, Կամոն առանձնապես չի սիրում այդ, բայց Վլադիմիր Իլյիչը նրան խնդրում է պատմել ամենայն մանրամասնությամբ, բոլոր մանրուքներով։

Եվ Կամոն շփելով իր ողորկ, վերջին չորս տարվա ընթացքում առաջին անգամ մաքուր սափրված դեմքը՝ պատմում է այն բոլոր դեպքերը, որոնք նրան հասցրել են Փարիզ...

Երբ ռազմա-դաշտային դատարանի ատենակալները հրաժարվեցին դատել նրան, և դատարանը որոշեց փոխադրել նրան հիվանդանոց, Կամոն հասկացավ, որ փախուստի հույսերն ավելացան։ Ճիշտ է, Միխայլովյան հիվանդանոցի հոգեբուժական բաժնի ռեժիմը բանտային ռեժիմից քիչ էր տարբերվում, բայց Կամոն սկսեց ուշի-ուշով զննել այն հսկիչներին, որոնք նշանակված էին իրեն հետևելու համար։

Նա կարողանում էր հրապուրել մարդկային սրտերը։

Հուլիսյան մի կեսօր Կամոյի քույրերի՝ Ջավահիրի և Արուսյակի ապրած տան դռան զանգը

քաշեցին։ Դռան առաջ կանգնած ան-
ծանոթ, մռայլադեմ մարդը հոնքերի
տակից նայեց դուռը բացող Արուս-
յակին։

— Ո՞ւմ եք ուզում։

— Ես ուզում եմ տեսնել Ջավա-
հիր Տեր-Պետրոսյանին։

Արուսյակն անծանոթին սենյակ հրա-
վիրեց և խնդրեց մի քիչ սպասել։

Ջավահիրը սենյակ մտավ արագ, ձեռքերը ջղայնորեն տրորելով։ Նա կարծես գլխի էր ընկել, որ այդ այցելությունը կապված է Կամոյի հետ։ Անծանոթը ձեռքը տարավ թղթապանակի մեջ և այնտեղից հանեց մի երկտող։ Այնտեղ ծանոթ ձեռագրով, վրացերեն գրված էր.

«Զինի՛ կարծում եք, թե խելագար խելագար եմ։ Ես ձևացնում եմ, ինձ տանջում են, տառապանքներս անտանելի են դառնում։ Փրկությունս փախուստն է։ Չեմ ուզում բանտում մեռնել, աշխատեցեք իմ փախուստը կազմակերպել. ուզում եմ էլի աշխատել պրոլետարիատի համար»։

Ջավահիրը հիշեց, թե Կամոն ինչպես էր կարողանում կազմակերպել փախուստները։ Չգիտես ինչու, հիշեց նաև նրա կատակով արված կռիվները իր քեռու, Թիֆլիսի խոշոր վաճառականի, բարկանալու տիրոջ հետ, որը շարունակ վնթվնթում էր.

— Քո ինչի՞ն է պետք այդ ամենը։ Ինչդ է պակաս, ուտելու բան չունես։

— Ուրիշները չունեն, քեռի,— լուրջ պատասխանում էր Կամոն։

Մռայլադեմ մարդու այցելությունից մի շաբաթ հետո Կամոն արդեն ուներ յոթ սուր անգլիական ճկանալի սղոց և մի պարան։ Այդ ամենը նա թաքցրել էր իր ներքնակի մեջ։

Կամոն որոշել էր զուգարանի լուսամուտով փախչել։ Դրա համար հարկավոր էր սղոցել նրա երկաթե վանդակը։

Լարված, քրտնաջան աշխատանքն սկսվեց։

Ականջ դնելով ամենափոքր խշխշոցին անգամ, ատամ սեղմելով երկաթին, որպեսզի այն չխզխզա, սղոցը դանդաղ ետ ու առաջ քսելով, նա ամեն օր աշխատում էր։ Բոլոր մկանների գերհուզելի լարումով, նա ասես ջանում էր խլացնել մետաղի զրնգոցը, որ հանկարծ հնչում էր լռության մեջ։ Զինի՛, թե լսի միջանցքում քայլող հսկիչը կամ ցածում, լուսամուտի տակ կանգնած ոստիկանը։ Այն ժամանակ հո ամեն ինչ կորած է։

Սղոցները չէին դիմանում և կոտրվում էին իրար հետևից։

Սղոցված տեղերին Կամոն հացի միջուկ էր քսում, ժանգափոշով տրորում, որպեսզի չնկատվեն։

Գիշերները հսկիչները թուղթ էին խաղում և քիչ էին ուշադրություն դարձնում իրենց հսկողության հանձնված կալանավորների վրա։ Դա աշխատանքը շատ էր արագացնում։

Հիվանդասրահում էլ նա իր շղթաներն էր սղոցում։ Սղոցում էր վերմակի տակ, որպեսզի մետաղի կրճտոցը խլացնի, իսկ այն անցքին, որով հսկիչը կարող էր նայել, անփույթ կամ երանությամբ լի հայացք էր հառում։

Լուսամուտում սղոցելու երեք ձող էր մնում։

Գիշերը, երբ նա աշխատանքն սկսեց, սղոցը կոտրվեց։ Դա վերջին սղոցն էր...

Սղոցի կտորները բերված մասների մեջ սեղմելով, նա ջանում էր շարունակել աշխատանքը, բայց իզուր. սղոցի կտորները միայն քերծում էին երկաթը՝ առանց նրա մեջ խրվելու։

Արդյոք այնքան ում կունենա՞, որ նորից լրիվ չսղոցված ձողերը։

Հենց այս մտածմունքով էլ նա վերադարձավ հիվանդասրահ։ Հարկավոր էր լավ քնել և ուժերը խնայել։ Վաղը վճռական օրն է։ Փախուստի պլանը մշակված է, ընկերներն սպասում են նրան։ Փախուստի համար ամեն ինչ պատրաստ լինելու և խանգարիչ հանգամանքի բացակայության նշանը պետք է տրվեր մյուս ափից, կամուրջի մոտ գտնվող լանջի վրայից։





Առավոտյան Կամոն ամեն րոպե նայում էր այդ տեղին, բայց ընկերը դեռ չէր երևում:

Արդյոք չի՞ խաբել նրանց Բրագինը, այն հսկիչը, որի միջոցով կապ էր ստեղծվել քույրերի հետ։ Նա պետք է վերջին նամակը հանձներ և գիշերվա գնացքով մեկներ Քութայիսի։ Գուցե նա... Բայց միջանցքում էլ ամեն ինչ հանգիստ է։ Նշանակում է ոչ որ ոչինչ չգիտի...

Լսվեց ժամացույցի զարկը։ Եվ խուլուն կամուրջի մոտ մի մարդ երևաց։ Նա՞ է, արդյոք։ Ահա այդ մարդը գլխարկը վերցնում է և սկսում թափ տալ։ Նա՛ է։

Առաջին նշանը տրված է՝ «Պատրա՛ստ լինել»։ Հիմա պետք է սպասել երկրորդին՝ «Ամեն ինչ հանգիստ է, կարելի է դուրս գալ»։

Բայց այդ րոպեին ափին ինչ-որ մարդիկ են երևում և սկսում են հանգիստ զբոսնել։ Ընկերը, որ ուզում էր թաշկինակը հանել, որպեսզի երեք անգամ թափահարի, նորից գրպանն է դնում այն։

Նորից զարկում է ժամացույցը։ Դուռը ճռռում է։ Ներս է մտնում հսկիչը և ինչ-որ բան է հարցնում։ Կամոն հեռանում է լուսամուտից, գլուխն օրորում և նստում անկյունում։ Հսկիչը դուրս է գնում։

Կամոն նորից նետվում է լուսամուտի մոտ։ Գետափին մարդ չկա. նա տեսնում է, թե ինչպես ընկերը կամուրջի մոտ թափահարում է սպիտակ թաշկինակը՝ մեկ անգամ, երկրորդ, երրորդ անգամ։ Վե՛րջ։ Կարելի է սկսել։

Կամոն կատաղորեն քաշում է դուռը։ Հսկիչը շտապ կվազի այդպիսի աղմուկի վրա, բացի դրանից հարևան հիվանդը այդպիսի բարձր թխկթխկոց անել չի կարողանում։ Հիմա նա կսկսի աղմկել իր անկյունում և այդպիսով՝ հսկիչների ուշադրությունն իր կողմը կգրավի։ Եվ այդ մի քանի րոպեի ընթացքում Կամոն պետք է ամեն ինչ անի. նա պետք է իր վրայից հանի հիվանդանոցային խալաթը, նրա մեջ փաթաթի կտրված շղթան, հետ սեղմի լուսամուտի վանդակը (արդյոք ուժը կպատի՞), պետք է լուսամուտից կապի պարանը, որ փաթաթված է իր գոտկին, և ցած իջնի։

Ամեն ինչ ընթանում է, ինչպես որ պետք է... Ծառայողը Կամոյին տանում է միջանցքով և մրթմրթում.

— Ա՛յ թե բան սարքեց այս գիժը... Հիմա կեսօր կլինի... Դու արագ գնա, իսկ ես կվերադառնամ նրա մոտ...

Վերջապես Կամոն մենակ է։ Նա արագ է գործում, արդեն ճշգրիտ որոշել է իր ամեն մի շարժումը։ Գլխավորը՝ երկաթե վանդակն է, որից նա բռնում է երկու ձեռքով և ձգում։ Ուսերը լարվում են, և ժանգոտ երկաթը դանդաղորեն ծռվում է. էլի՛, էլի՛... Մի տեղում պոկված ձողը թույլ ճռթյունով կոտրվում է, և այժմ արդեն Կամոյի առջև բաց երկինքն է, երկինքը՝ առանց երկաթե վանդակի։ Ազա՜տ երկնքի մի փոքրիկ քառակուսի։

Ճարպիկ մատներն արագ կապում են պարանը։ Կամոն ձգվում է, ուսերն առաջ տալիս, խցկվում նեղլիկ լուսամուտի մեջ և ահա արդեն զգում է, թե ինչպես է քամին խփում իր լարված, բորբոքված մարմնին։ Էլի մի ջանք, և ոտքերն զգում են աղյուսի անհարթ պատի սառնությունը։

Ձեռքի թաթերն այրվում են։ Նա արդեն պարանի միջոցով իջնում է ավելի ու ավելի արագ... Ժամանակ էլ է գտնում ներքև նայելու... Հանկարծ մի ուժեղ ցնցում, և նա քարի պես ընկնում է գետին։

Գետինը խոնավ է, այնտեղ նոր խոտ է բուսած։ Անվնաս է ընկել։ Նա վերև է նայում։ Պատի վրա ճոճվում է պարանի կտորը։

Կամոն արագ վեր է կենում և գնում դեպի գետը։ Մտնում է ջուրը և ափի երկարությամբ քայլում դեպի կամուրջը։

Օգոստոս է, նշանակը՝ շոգ։ Կամրջի այն կողմը լողանում են տղաներ, արհեստավորներ և պարզապես շոգից տանջվող անցորդներ։ Ահա մեկն էլ. երևում է՝ հոսանքը սրան կամրջի այս կողմն է բերել, քայլում է երերալով, ափից կառչելով։ Կամ գուցե սա ուռկանը կորցրած ձկնո՞րսն է։

Նրան ընդառաջ է շտապում ընկերը՝ հագուստը թևի տակ դրած, ձեռքը մեկնում է Կամոյին և օգնում ափ դուրս գալ։

— Դրողի տարածնե՛ր, չէ՞ր կարող մի կարգին պարան ուղարկել։ Փտած պարանն ուղարկել էիր, քիչ մնաց ջախջախվեի,— մռայլ ասում է Կամոն ողջույնի փոխարեն։ Նա գլխին է դնում իրեն մեկնած գլխարկը, վրան է զցում թեթև թիկնոցը և ոտքերի ավազը թափ տալով արագ հագնում է կոշիկները։

Շուրջը լուռ է ու խաղաղ։ Ամեն ոք իր գործով է զբաղված։ Կարելի է գնալ։ Կամոն ընկերոջը թևանցուկ է անում։

— Դե դու ինձ վրա մի՛ բարկանա։ Հետո կգրկախառնվենք ու կհամբուրվենք։ Հիմա հարկավոր է շտապ հեռանալ այստեղից։

Նրանք շուռ են գալիս դեպի մի նրբանցք, հետո՝ մյուսը, մի կառք են կանգնեցնում և ճանապարհը կառքով շարունակում։ Կամոյին թվում է, թե քաղաքն առանձնապես զարդարուն է և պայծառ։ Չէ՞ որ երկար տարիներ նա այս փողոցներով չէր անցել։

Հետո նրանք գնում են տրամվայով, ապա՝ նորից կառքով։

Մի քանի ժամից հետո ամբողջ քաղաքը ոտքի է հանված։ Ոստիկանական թաղամասերում հեռախոսներն անընդհատ զնգզնգում են, փողոցներով շորերը փոխած ոստիկաններ են վազվզում։ Հիվանդանոցի մոտ գետի ափին ժանդարմներ են երևում՝ շան հետ։ Կամոյի ընկած տեղից շանը



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

վստահորեն հետքը հոտոտելով գնում է մինչև գետը և այստեղ կանգ առնում։ Նա ետ է դառնում, ագահորեն հոտոտում հետքերը, նետվում դեպի ջուրը՝ ծմրալով ու հաչելով... Հետքը կորած էր։

Թիֆլիսի ոստիկանապետը շանթ ու որոտ էր արձակում, բռունցքով սեղանն էր ծեծում, ամեն րոպե հեռախոսալարն էր ճանկում և իր ստորադրյալներին շշպռում անշնորհքության համար։ Նա հրամայում էր անհապաղ գտնել պետական հանցագործ Սիմոն Արշակի Տեր-Պետրոսյանին, «գտնելու դեպքում ձերբակալել նրան և իսկույն տեղեկացնել Թիֆլիսի նահանգապետին ու փոխարքայի հատուկ գործերի գրասենյակին»։

Թիֆլիսի ոստիկանապետի մտքովն էլ չէր անցնում, որ իրենից մի քանի հարկ ցած, ոստիկանապետի վարչատան շենքի նկուղային հարկի մի փոքրիկ սենյակում՝ թախտի վրա, թիկնոցով ծածկված, քնած է այն նույն պետական հանցագործը, որին որոնում են քաղաքի բոլոր ծայրերում։

Բայց ոստիկանապետի «հյուրասիրությունը» չարաշահել չէր կարելի։ Հարկավոր էր այդտեղից գնալ։ Իսկ ինչպե՞ս անել այդ, երբ ամբողջ քաղաքին հայտնված է հանդուգն փախուստի մասին, և բոլոր ճանապարհները ուժեղ հսկողության տակ են գտնվում։ Գնացքով մեկնել անհնարին է. կայարանում ոստիկանական գործակալներ ու լրտեսներ են վխտում։

Ասեեր՝ կյանքն իր սովորական ընթացքով է գնում։ Ուրիշ են ոստիկանական պաշտոնյաների հոգսերը և ուրախությունները, ուրիշ՝ երիտասարդ ուսուցիչների, ուսանող-ուսանողուհիների հոգսերը, ուրախություններն ու զվարճությունները։ Սրանք ամեն երեկո հավաքվում են քաղաքի ծայրամասում, այնտեղ, որտեղ սկսվում է Ռազմավիրական ճանապարհը, և հեծանիվ քշում։

Տեղը լավն է, խաղաղ։ Քուից զովություն է փչում։ Որքա՞ն հաճելի է այստեղ մի քանի ժամ անցկացնել։ Հեծանիվ քշելուց հոգնելով՝ նրանք նստում են կանաչ խոտի վրա և ուրախ ծիծաղով ու կատակներ անելով նախաճաշում։

Եվ զինվորները ժպտում են՝ որպես պատասխան ուսանողուհիների սիրալիր ժպիտներին. երբեմն նույնիսկ հիացմունքով են դիտում, թե ինչպես մոլի հեծանվորդները պեդալներին սեղմելով սլանում են իրենց մոտով, գոչելով՝ «Տեսնենք ո՛վ կըհաղթի»։

Պահակախմբից ոչ մեկը չի նկատում, որ մրցության համար գծից այն կողմ սլացող յոթ երիտասարդներից միայն վեցն են վերադառնում և սկսում են անհոգ նախաճաշել, մինչդեռ յոթերորդը՝ փոքրիկ բեղիկներով, ուսուցչի համազգեստ հագած այն թիկնեղ երիտասարդը կեռմանի հետևը թաքնվելով, ամբողջ ուժով սեղմում է պեդալներին։

— Ահա այս է բոլորը, Վլադիմիր Իլյիչ,— ասում է Կամոն։— Բաթումիում հարկ եղավ նորից ներկվել ու զգեստափոխվել։ Այնտեղ արդեն ես թուրք դարձա... Հիմա շատ եմ մտածում. ի՞նչ անեմ, ո՞ւր գնամ, պարտիային որտե՞ղ ավելի շատ պետքական կլինեմ ես։

—Դուք ֆանտազյո՛ր եք։ Դու ք զարմանալի ֆանտազյոր եք, համարձակ և տաքարյուն,— ասում է Վլադիմիր Իլյիչը։— Նորից շշմեցուցիչ բաների մասին եք երազում, այնինչ այժմ, սիրելիս, մեզ հարկավոր են հասարակ, առօրյա գործեր։ Դրանք նույնիսկ կարող են ձեզ ձանձրալի, հասարակ թըվալ։ Գրականության փոխադրման գործը, օրի-

նակ... Դուք կարո՞ղ եք այդ գործին ձեռնարկել:

— Իհարկե՛, Վլադիմիր Իլյիչ:

Հետո Վլադիմիր Իլյիչը Կամոյին երկար հարցուփորձ է անում նրա քույրերի մասին, խորհուրդ է տալիս անպայման աչքի վիրահատում կատարել: Չէ՞ որ աչքի վրայի այդ փառով լրտեսներն անսխալ կճանաչեն նրան: Իսկ վիրահատումից հետո կարելի է ծովով գնալ դեպի հարավ, դեպի Կովկաս: Այնտեղ գործ կճարվի:

— Իսկ գլխավորը՝ լավ պահեցեք ձեզ, դուք մեզ շա՜տ, շատ եք հարկավոր... Մեր սիրելի «կովկասյան ավազակ»... եզրափակում է Իլյիչը:

Արդեն շատ ուշ էր, երբ Կամոն գլխի ընկավ, որ ինքը նստել է ժամանակը մոռացած և այդ թանկագին ժամանակը խլում է Վլադիմիր Իլյիչից: Նա սկսեց հրաժեշտ տալ: Հենց վաղը նա կմեկնի Մարսել:

Իլյիչը ուշադիր նայեց Կամոյին:

— Իսկ դուք ի՞նչ շորով եք գնալու:

— Հենց այսպես...

— Տաք վերարկու ունե՞ք: Չէ՞ որ այդպես կըմրսեք: Ինչպե՞ս եք ման գալու տախտակամածի վրա:

— Այս կոստյումով էլ կարելի է:

— Այդպես մի՛ անեք: Տաք վերարկու անպայման հարկավոր է: Ես ինքս միշտ լինում եմ տախտակամածի վրա և գիտեմ:

Իլյիչն անցավ մյուս սենյակը և վերադարձավ՝ բերելով մի մոխրագույն թիկնոց: Թիկնոցը գցելով Կամոյի ուսերին՝ ասաց.

— Տաք է, տաք... Մի՛ կասկածեք: Սևերես չի անի այն պարանի պես:— Նա ուրախ ծիծաղեց և թիկնոցը Կամոյի վրա ուղղելով՝ ամուր ու սիրալիր ցնցեց նրա ուսերը:

Վաղ առավոտյան Կամոն մեկնեց Փարիզից:

Առջևում շատ գործ կար: Առջևում ռևոլյուցիան էր:

Թարգմ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# Զբոսայգում

ՄՆԱՑԱԿԱՆ ՄԱՐԿՈՍՅԱՆ

Դաշտերի վրա իջել է աշուն,
Թովիչ գույներով ծառ ու թուփ ներկել.
Ոսկի դաշտերն են միալար խշշում
Ու երգում աշնան մեղմանույշ երգեր:
Մեր ավտոբուսը մտնում է անտառ...
Այստեղ ամեն ինչ այնպես դյութիչ է,
Ահա այն տունը, ուր մտքով պայծառ
Ապրել է, գործել անմահ Իլյիչը:
Այս նստարանին Լենինն է թիկնել,
Խորհել երջանիկ գալիքի մասին,
Շիկահեր մանկան գլուխն է գրկել,
Ու զրուցել են նրանք միասին:
Եվ սրտի դողով ես ոտք եմ դնում
Պուրակը հատող անցուղու վրա,
Փնտրում եմ, գուցե, ո՞վ է իմանում,
Գտնեմ ոտքերի հետքերը նրա:
Այս յասամանի թուփը դեռ դալար
Եվ դարեր ապրած այս վեհ կաղնին
Որքա՜ն հարազատ, սուրբ են ինձ համար,
Չէ՞ որ տեսել են, լսել Լենինին:
Շենքի առջևում, ձորակում խաղաղ,
Հայելու նման փայլում է լիճը.
Քանի՜ անգամ է նավակով դանդաղ
Զբոսնել այնտեղ, հրճվել Իլյիչը...



Նկ. ՄԱՅԻՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ



# „ՀԱՐԳԵԼԻ պարտքը"

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Լուսիկը թվաբանության դասագիրքը կորցրել էր։ Սկզբում դա նրան այնքան էլ չմտահոգեց.

«Խնդիրները չեմ լուծի, կասեմ գիրքը կորցրել եմ»։

Բայց երեկոյան նա սկսեց մտահոգվել։ Դասարանում ով որ խնդիրներ չէր լուծում, այդպես էր արդարանում։ Նույնիսկ ինքն էլ մի անգամ այդպես էր արդարացել։ Այժմ, երբ գիրքը իրոք կորցրել է, չգիտես ինչու, այդ պատճառաբանությունը անհիմն է թվում։ Հարևան բնակարանում ապրող Կարապետյան Սոնիկը իր դասարանցին է։ Կարելի է մի քանի րոպեով գիրքը խնդրել, արտագրել խնդիրները և վերադարձնել։

Նա այդպես էլ արավ։ Եղբորը՝ Գագիկին ուղարկեց գիրքը բերելու։

Քիչ անց Գագիկը վերադարձավ։

— Ինչքան զանգահարեցի, ոչ ոք դուռը չբացեց։

«Տեսնես ինչպե՞ս է զանգահարել... գուցե Սոնիկենց զանգը փչացել է» — մտածեց Լուսիկն ու ինքը բարձրացավ Սոնիկի մոտ։ Տանն իսկապես ոչ ոք չկար։ Նա մի պահ անհանգստացավ, բայց իսկույն էլ ելքը գտավ։

«Գիրքս կորցրել էի, գնացի Սոնիկից խնդրելու, նա էլ տանը չէր»։ Դրանից ավելի լավ արդարացում։ Նա երբեք ինքն իրենից այդքան գոհ չէր եղել։

Երբ ուրախ թռչկոտելով վերադառնում էր, հանկարծ հիշեց իրենց բնակարանի տակի մեծ գրախանութը, որի հենց ցուցափեղկում իր թվաբանության գրքից կար դրված։

— Մայրի՛կ, թվաբանության դասագիրքս կորել է, մեր գրախանութում էլ կա։ Փող տուր գնեմ։

Մայրիկը, որ միշտ մինչև լավ հարցուփորձ չաներ, Լուսիկին փող չէր տա, այս անգամ հակառակի պես, առանց ոչ մի խոսք ասելու, պահարանի արկղը դուրս քաշեց և Լուսիկին հինգ ռուբլի տվեց։

«Որ ճիշտ է լինում, ինչքան շուտ են հավատում» — մտածեց Լուսիկը։

Քիչ անց, երբ նա մոտեցավ գրախանութին, տեսավ, որ գրախանութի վաճառողը՝ ընկեր Արմիկը, արդեն փակում է խանութը։

«Ա՜յ, սա արդեն հարգելի պատճառ է» — մտածեց Լուսիկը և այն է, ուզում էր ետ գնալ, երբ լսեց գրավաճառի ձայնը.



— Ի՞նչ էիր ուզում, Լուսի՛կ։

Ճիշտ է, Լուսիկը մի քիչ տխրեց, բայց բոլորովին էլ ցույց չտվեց. ընդհակառակը, ավելի ուրախ ձևացավ։

— Թվաբանության դասագիրք եմ ուզում։

Ընկեր Արմիկը, որ արդեն պատրաստվում էր փակել դուռը, ասաց.

— Եթե այսօրվա համար ընկերներիցդ չես կարող վերցնել...

— Կարող եմ, ընկեր Արմիկ, — արագ վրա տվեց Լուսիկը։

— Դե որ այդպես է, վաղը կգաս։

Լուսիկը բարձրանում էր տան աստիճաններով և մտածում. «Ես մեղավոր չեմ, որ չկարողացա գիրքը գնել, հո չէ՞ի կարող անքաղաքավարի լինել և ընկեր Արմիկին ստիպել, որ նա խանութը նորից բաց աներ»։

Սոնիկը տանը չէր, իսկ գրախանութը փակ է. սա իսկական հարգելի պատճառ է, թե չէ միայն Սոնիկի տանը չլինելը ի՞նչ պատճառաբանություն է որ։

Բայց ա՜յ քեզ տարօրինակ բան։

Լուսիկի մտահոգությունը ոչ մի կերպ չէր անցնում։

Այս ի՞նչ է։ Անձրև՞ն է գալիս։ Երկինքն այնպես մռայլ է, որ անպայման շատ անձրև կգա, ու ինքը չի կարողանա թվաբանության գիրքը ուզելու համար հարևան փողոցը, իրենց դասարանցի Լևիկի մոտ գնալ։

Քիչ անց, նա Գագիկի հետ, պատուհանի մոտ նստած դուրս էր նայում։ Մայթերի ու տանիքների վրա փշրվում էր անձրևը։ Փողոցն ամայացել էր։ Շատերն էին ուզում տներից դուրս գալ, բոլորն էլ շատ կարևոր գործեր ունեին, բայց ի՞նչ կարող էին անել։ Անձրևն այնպես էր ցանցել փողոցները, որ դուրս գնալ հնարավոր չէր։

Մի անցորդ, անձրևանոցի մեջ փաթաթված, վազվազ անցավ։

— Գագի՛կ, գնա տես Սոնիկենք եկե՞լ են, թե ոչ,— անսպասելիորեն ասաց Լուսիկը։

Գագիկը վերադարձավ և հայտնեց, որ դեռ չեն եկել։

— Մայրի՛կ, ես չեմ կարող Ռուբիկի մոտ գնալ. կթրջվեմ,— բողոքեց Լուսիկը։

— Ես քեզ կտամ իմ մեծ հովանոցը,— պատասխանեց մայրիկը։

Իսկապես որ անձրևի տակ հովանոցով շատ լավ կլինի։

Մեծ հովանոցի տակ պատսպարված Լուսիկն ու Գագիկը քայլում են փողոցով։

Իսկ մայրիկի հովանոցի տակ այնքա՜ն լավ է, այնքա՜ն չոր։

Անձրևի սրածայր կաթիլները ծակծկում են լճացած ու հոսող անձրևաջրերը։

Նրանք կգնան Ռուբիկենց տունը, իսկ եթե Ռուբիկենք էլ տանը չլինեն, կգնան Սեդայենց, հետո, թե այնտեղ էլ չեղավ, Հակոբենց մոտ։

Եթե նույնիսկ ընկերներից ոչ մեկը տանը չլինի, կարելի է գնալ գրադարան։ Եթե գրադարանում էլ չլինի, էլի կարելի է գտնել։ Եթե անհրաժեշտ լինի, նույնիսկ կարելի է հենց իր՝ Լուսիկի կորցրած գիրքը գտնել։





# ՎԱՐԱՐԱԾ ԳԵՏԱԿԸ

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

1.

Միսակը կանգնած մտածում էր, երբ հանկարծ հայտնվեց Բողոլը: Նա լեզուն դուրս էր գցել, հևում էր ու պտտվում տղայի շուրջը:

— Բողոլ, եկել ես, որ միասին զբոսանքի՞ գնանք,— շան գլուխը շոյելով ուրախ բացականչեց Միսակը:

Բողոլը շարժեց պոչը:

— Դե, որ համաձայն ես, գնանք,— ասաց Միսակը և առաջ ընկավ:

Գնացին, գնացին, կոլտնտեսության կալն էլ անցան, հասան գետակին: Անցյալ ամառը, երբ Միսակը լողանում էր այդ գետակում, ջուրը շատ քիչ էր, հազիվ նրա ծնկներն էր ծածկում, իսկ հիմա ինչքա՜ն էր վարարել:

Միսակը գիտեր, որ դաշտ գնալու համար պիտի անցնեն այդ գետակը: Դա նրան չէր մտահոգում, որովհետև անցյալ տարի նա ոտքերը դնում էր ջրից դուրս ցցված քարերի վրա և հանգիստ անցնում: Իրենից տարիքավորները վազելով էին գնում մյուս ափը: Իսկ հիմա վարարած գետակն այդպես հնարավոր չէր անցնել. Միսակը մտածմունքի մեջ ընկավ:

Բողոլը անհանգստացած, վեր ու վար էր անում: Միսակը սթափվեց և տեսավ հանդիմանող հայացքով կանգնած շանը:

Միսակին թվաց, որ Բողոլն ասում է.

— Եթե գնալու ենք զբոսանքի, Մի՛ս, գնանք, թե չէ այստեղ կանգնելով ի՞նչ օգուտ:

Միսակը մի քայլ առաջ գնաց, կանգնեց ափին: Գետակի ջուրը մոտիկից ավելի շատ թվաց, հոսանքը՝ ավելի ուժգին:

Ինչքա՜ն ժայռեր ու բլուրներ էին ճեղքվել, ինչքա՜ն ջանք ու աշխատանք էր թափվել... Հարևան գյուղերից էին օգնության եկել, նոր միայն կարողացել էին լեռնային խնդրին հաղթել, որ թողնի դարավոր ճանապարհը՝ խոր ձորերից վեր բարձրանա, աշխարհ տեսնի, ճանապարհորդի ծաղկած դաշտերով ու գյուղերով:

Համոզել, տարել էին, և նա կամաց-կամաց վեր էր բարձրացել, հասել մի բարձր զառիթափի, ասես փոշմանել, հանկարծ շուռ էր եկել ու այնտեղից սլացել ներքև: Այստեղ նա հանդիպել էր էլեկտրակայանին, կատաղած մտել էր ներս, սպառնալով կոր-կոր անել խողովակն ու ներխուժում կառուցված քարե նոր շենքը: Սակայն խելահեղ գետակը դարձել էր սանձված ձի, հնազանդվել էր, միացել մոտիկից հոսող բարակ ջրին և դեպի գյուղ շտապել...

Հիշեց այդ բոլորը և նրան թվաց, որ գետն ասում է, «Տեսնո՞ւմ ես, ինչ ուժ ունեմ ես, Միսակ: Դու ինձնից մի՛ վախեցիր: Այդ ե՛ս եմ, որ գիշեր ու ցերեկ լույս եմ վառում տներում, գրասենյակներում, փողոցներում, հրապարակում և ամեն տեղ... Մինչև իմ գալը ինչի՞ նման էր ձեր գյուղը: Մութը որ ընկնում էր, այստեղ ու այնտեղ, ջրակալած աչքերի պես պլպլում էին ձեր նավթի լամպերը, իսկ հիմա՜... հիմա մութը գողի պես կծկվում է ձորերում և չի կարող մոտենալ գյուղին: Ճիշտ է, մինչև իմ գալը ջուր ունեիք, բայց նա ի՞նչ էր, ո՛չ գետ էր, ո՛չ առու... հազիվ մի երկու ջրաղաց էր դարձնում, այն էլ մինչև ամառը: Իսկ հիմա ջրաղացը փոխվել է էլեկտրաղացի, որի ուժը ես եմ տալիս: Ոչ մի հերթ: Բարձված սայլերով ու ավտոներով բերում են ցորենը և մի քանի ժամից հետո աղացած ալյուրը տանում: Այն էլ իմացիր, Մի՛ս, որ էլեկտրաղացը սպասարկում է ամբողջ շրջակա գյուղերին»:

Միսակը գիտեր, որ եթե չլիներ այդ ջրառատ, աղմկոտ գետակը, չէին վառվի իրենց լույսերը: Բայց նա չէր կարող պատկերացնել, թե ինչպես էին էլեկտրակայանում դըրված մեքենաներն ու սարքավորումները այդ ջրի ուժը խլում, վերածում լույսի և լարերի միջոցով ուղարկում ուզած տեղը:

Շունը նորից զգալ տվեց իր անհանգստությունը:

— Բողո՛լ, ախր ջուրն անցնել չեմ կարող: Ուզո՞ւմ ես գնանք կամրջով,— ասաց նա և փոշմանեց:

Կամուրջը բավական հեռու էր: Բացի այդ, կամրջով անցնելու համար պիտի քայլեին Վիլյոյենց դռնով... Այդ նշանակում էր քարի կարկուտի տակ ընկնել: Վիլյոն ոչ ոքի չէր խնայում, նույնիսկ մեծահասակներին էր քարով խփում ու թաքնվում:

— Ի՞նչ ես ասում, Բողոլ,— տղան տարակուսանքով նորից դիմեց շանը:

Բողոլը մի կողմ քաշվեց: Միսակը համոզված, որ Բողոլը Վիլյոյի անունն անգամ լսել չի ուզում: Նրան թվաց, որ Բողոլն ասում է. «Գլուխս չունեմ այդ անհասկացողի հետ: Անցյալ օրը Սերոբի հետ էինք անցնում կամրջով: Այնպես քարով խփեց կողիս, որ մինչև հիմա ոսկորներս ցավում են... Եթե Սերոբը թույլ տար, ես նրան ցույց կտայի»:

— Բողո՛լ,— սրտանց բացականչեց Միսակը, որը երբ գոհ էր,— միասին անցնենք: Շունը նայավ և սկսեց պտտվել տիրոջ շուրջը, ապա դունչը խրեց Միսակի թևի տակ և ուղիղ նայեց նրա աչքերին:

Միսակին թվաց, որ Բողոլն ասում է. «Ես պատրաստ եմ քեզ հետ ջուրը մտնել, Միս, թեև այնքան էլ չեմ սիրում այդ աղմկարարին իր լրպագության համար, բայց նոր կոշիկներդ, որ մայրիկենյան նվեր են...»

Միսակը խնդրողի հայացքով նայեց շուրջը:

— Ոչինչ, Բողոլ, կոշիկներս հետո կչորանան, սիրիչ անգամ այնքա՞ն եմ ջուրն ընկել:

Միսակին թվաց, որ Բողոլն ասում է. «Ո՛չ, Միսակ, մինչև կոշիկներդ ու շալվարդ չհանես, ես ջուր մտնողը չեմ...»

Միսակը վարվեց այնպես, ինչպես Բողոլն էր ցանկանում:

2.

Մտան ջուրը: Միսակը ամուր բռնել էր շան վզի փոկից: Միանգամից ջուրը շատացավ, դեռ երկու քայլ չէր արել Միսակը, երբ սառնորակ ջուրը ծածկեց նրա ծնկները: Բողոլը գնում էր հանգիստ և զգույշ, ոտքերը հատ-հատ դնելով: Միսակը, որ սկզբից փորձում էր կատակներ անել Բողոլի հետ, լռեցավ: Ջուրը հասավ մինչև նրա գոտկատեղը: Բողոլը դանդաղ էր գնում, սառը ջուրը նրան դուր չէր գալիս: Նա բարձր էր պահել քիթը, հոտոտում էր, փնչացնում, ասես օդ չկար շնչելու: Լավ չէր զգում իրեն նաև Միսակը:

Հասան գետակի խոր տեղը, ջուրը միանգամից ծածկեց Միսակի կրծքի վերին մասը, նա էլ սկսեց արագ-արագ շունչ քաշել, սրթսրթալ, Բողոլը ինչ-որ մռմռաց: Միսակը զգաց, որ շունն այդ ձևով իրեն զգուշացնում է: Նա ավելի ամուր բռնեց շան վզից: Գնալով ավելի էր դժվարանում անցումը: Միսակի շունչը կտրվում էր, ոտները դիպչում էին քարերին, գլորվում էր: Լավ էր, որ Բողոլը ջրի հոսանքի ներքևի կողմում էր, իրեն պահում էր:

Ջրի հոսանքը գնալով ուժեղանում էր, բարձրանում, իջնում, պտույտ գործում:

Միսակին թվաց, որ գետն ասում է. «Տեսնո՞ւմ ես, ինչ ուժ ունեմ, Միս, զգույշ կաց, հա՞: Ես ոչ ձեր տան մոտի առվակն եմ, ոչ էլ անցյալ տարվա գետակը, որ առանց ոտնամանները հանելու փազում, անցնում էիր... Իսկ էն չարաճճի Վիլյոն փորձեր էր անում թռչել, միանգամից անցնել: Հիշո՞ւմ ես, մի անգամ թռչելիս՝ ոտքը քարի դիպավ, մի շարաթ պառկեց, հազիվ լավացավ: Կգնաս ընկերներից իմ մասին կպատմես, Մի՛ս, հայրիկիցդ էլ կիմանաս, թե ինչու են այսքան շատ իմ ջրերը»:

Գետակը երևի էլի բան էր ուզում պատմել, երբ հանկարծ մթնեցին Միսակի աչքերը, ոտները գետնից կտրվեցին: Նա ակամայից մի ճիչ արձակեց, բայց չկորցրեց իրեն, ամուր կառչեց շան վզի փոկից... Բողոլը քիթը փըթփըթացնելով մի պահ լող տվեց: Միսակի ոտները նորից դիպան քարերին:

Ջրի մայլ և խիստ ձայնը փոխվեց: Միսակին թվաց, որ գետակը նույնիսկ ժպտում է իրեն և ասում. «Ձեռքդ հաս, Մի՛ս, ես հենց այնպես, քեզ փորձեցի, սրտո՛տ տղա ես...»

Դուրս եկան այն ափը:

Բողոլը թափ տվեց իրեն, ջրի սառը կաթիլները ցրեց դալար կանաչի վրա և թռչկոտելով սկսեց պտտվել Միսակի շուրջը: Միսակին թվաց, որ Բողոլն ասում է.

— Ապրե՛ս, Միսակ, դու սրտոտ տղա ես, ես սիրում եմ քեզ... Տեսա՞ր, քեզ ինչպես գետն անցկացրի:

Միսակը շոյելով Բողոլի գլուխը, որ չոր էր մնացել, համբուրեց նրա սուր քիթը, գրկեց վիզը և սրտանց ասաց.

— Բողո՛լ, դու խելացի ընկեր ես...

Դա Միսակի առաջին հաղթանակն էր:



# ԱԿՍԵԼ ԲԱԿՈՒՆՑ



Ակսել Բակունցը ստեղծագործեց մոտավորապես տասը տարի, բայց իր ուժեղ հետքը թողեց սովետական գրականության մեջ: Նա ստեղծեց իր ինքնուրույն ոճը, որը սովետական արձակում նորություն էր:

Բակունցի արձակն իր մեջ ներծծեց Հայաստանի արևի բոլոր գույները, որոնք գնալով պայծառացան:

Բակունցը կերտեց անցյալի հայ գյուղի մարդկանց կերպարները: Նա չմնաց իր կրած Մթնաձորում, այլ դուրս եկավ լայն աշխարհ, բայց միշտ նրան հարազատ մնացին հասարակ մարդիկ, հողի ու աշխատանքի մշակները:

Նա գրեց սրտառուչ, ջերմ գործեր նոր կյանքը կերտողների մասին, վերափոխվող երկրի և նրա նոր մարդկանց մասին:

Բակունցի «Մթնաձորը», «Սև ցելերի սերմնացանը», «Անձրև» պատմվածքների ժողովածուները, «Լեռնային բնապատկերներ», «Կյորես» վիպակներն ու անավարտ վեպերը սովետական գրականության լավագույն էջերից են:

Հոկտեմբերին մեր ժողովուրդը նշեց սովետական խոշոր արձակագրի ծննդյան 60 տարին:



ԱԿՍԵԼ ԲԱԿՈՒՆՑ

(Հատված)

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

* * *

Իբրև վաղեմի պատմագիր, դողացող ձեռքերով ես գրում եմ իմ պատմության վերջին էջերը։ Հարկավոր է պատրույգը բարձրացնել, և մինչև ձեթը հատնի, ավարտել անկրկնելի օրերի պատմությունը։

Հիմա էլ մնում է մեր քարափը, իբրև հսկայի մատ՝ ցից քարը մեր թաղի գլխին։ Ուզում եմ, որ այս անզարդ տողերը մնան այնքան, որքան կմնա մեր քարափը։

Վրա հասան դառնաշունչ օրերը, ինչպես ցուրտ աշուն։ Արտերում հասած ցորենները ծլում էին, հողի մշակները մրսում էին խրամատներում և անվարժ ձեռքերով շարժում հրացանի փականակը։ Արճիճե կարկուտը ծեծում էր բարերն ու քարափները, հրանոթի գնդակը շառաչելով պայթում էր ծմակներում, սարսափահար անում մարդկանց ու գազաններին, ջարդում դողահար ծառերը։

Զորեց ձմեռը, մահվան նման սառն ու անողոք։

Քաղաքում գզգզված մազերով մի մոնտյոր, մազութից սևացած շորերով, սանդուղքն ուսին, իբրև լապտերավառ, տնետուն էր ման գալիս։ Մի տեղ բուքը պղնձե թելերն էր կտրատել, մյուս տեղը գնդակը փշրել էր լամպը։ Շրապնելը ճեղքել էր սյունը, սպիտակ բաժակները ցած էին կախվել և աղիողորմ զրնգում էին, երբ քամին խրար էր խառնում թելերը։

Մոնտյորն ամեն տեղ լինում էր։ Նա լսում էր, թե ինչ են խոսում տներում հավաքված մարդիկ. նա տեսնում էր, ով ինչպես է ապրում։ Մի անգամ նա տեսավ Մաշոյին ձյունի նման սպիտակ շորերով, մազերի մեջ՝ թառամած մանուշակներ։ Նա իջնում էր սանդուղքով, մի սպայի հետ թևանցուկ, իսկ Անդոն կապկպում էր էլեկտրալարը։

Կինը գլուխը վեր բարձրացրեց։ Նրա հայացքում կար պաղ անտարբերություն, կարծես սյունի վրայից նայողը Անդոն չէր, այլ անմարմին մի խրտվիլակ։ Սպան որսաց կնոջ հայացքը, զննող աչքերով նայեց վերև։ Անդոն դանդաղ կապկպեց լարերը, աչքերը չհեռացնելով սպայից։

Թշնամին էր, Լեռնա-Հայաստանի հետախույզ բաժնի սպան։ Եթե նա գիտենար, որ բոլորովին մոտիկ, սյունի տակ ընկած կաշվե պայուսակի մեջ պահված թուղթը կմատներ մոնտյորին, ինչպիսի գազանային ուրախությամբ սյունից կիջեցներ նրան և կքշեր խոնավ զնդան։

Երբեմն ճրագները թարթում էին երկու անգամ, երեք անգամ։ Ամբողջ քաղաքն ընկղմվում էր խավարի մեջ և, ապա հանկարծ լույսերը բռնկվում էին։ Անդոն էր այդպես անում, երբ նրան պատվիրում էր մեկը, որին Անդոն երբեմն տեսնում էր քաղաքի խուլ թաղերից մեկի ներքնահարկ տանը։

Եվ այդ գիշեր քաղաքի զանազան անկյուններից մի քանի հոգի զարտուղի ճանապարհներով, այգիների արանքով, իջնում էին ձորը։ Հին քարանձավում ձեթի ճրագի լույսը ճոճվում էր սևացած պատերի վրա։ Ճրագի շուրջը նստողների ստվերները թրթռում էին պատերի վրա, կարծես ստվերները ճիգ էին անում իրենց թևերը կտրելու ճրագից։

Ամենից բարձր խոսողը մի վիթխարի տղամարդ էր, որ ցերեկը իշխանատան կամարի տակ նստած պայտ էր ծեծում։ Մեղմ, ջերմ ձայնով խոսում էր այն ընկերը, որ ապրում էր ներքնահարկ տանը և ցերեկը դնում էր սև ակնոց։ Նա հաղորդում էր տեղեկություններ զինվորների ու զենքերի մասին և հրահանգներ, որ ստացվում էին ընդհատակյա ճանապարհով։ Երբեմն քաղաք էին գալիս գյուղերից և հեռու հանքերից. գալիս էին զարտուղի ճանապարհներով, երբեմն օրը ցերեկով՝ իբրև ածխավաճառ, իբրև ձին պայտառի մոտ բերած գյուղացիներ։

Անդոն անխափան չէր լսում նրանց։ Եթե ձորում մի շշուկ լսվեր, նա դուրս էր թռչում։ Դրսի հսկողությունը նրա վրա էր։ Նրանից լավ ոչ ոք չգիտեր ձորի ժայռերը, մութ քարայրները և նեղ արահետները։

Բուքը խաղում էր ձորում։ Մրսած գայլերը իջնում էին Դրնգանի անտառից, հոտոտում մարդկանց հետքերը, մտնում քարայրերն։ Ապա սարսափահար փախչում էին մեքենայի աղմուկից, լույսից, թեթև սուլոցից փախչում էին և նորից ոռնում քնի մեջ ընկղմած թաղերի վրա։

Լուսադեմին քարանձավի մարդիկ մեկ-մեկ ցըր-

վում էին։ Նրանք նեղ առապարներով և այգիների ճանապարհով գնում էին դեպի քաղաքի լուռ փողոցները։

Գնում էին և հետքերը կորցնում։ Ձորն խավար ամայանում էր։ Անդոն հանգցնում էր ձեթի ճրագը, պահում պատի ճեղքի մեջ և վերադառնում մեքենայի մոտ։

Երբեմն քարի տակից հանում էր տպագիր առաջին լոզունգը, որ ստացել էին սուրհանդակի հետ։ Նա փակում էր դուռը, թուղթը մոտեցնում կարմիր լամպին։ Խոնացած թուղթը արնագույն էր դառնում, և սև տառերը պողպատի սառնությամբ ասում էին.

— Խաղաղություն խրճիթներին, պատերազմ պալատներին...

Դրսում ոռնում էր բուքը։ Քաղաքի ու նրա բնակիչների վրա ծանրացել էր երկաթի խեղդող մի կափարիչ. ծանր, ինչպես ձմռան խավար գիշերը։

Պայծառ վառվում էր միայն մի կարմիր ճրագ, որի լույսի տակ մի երիտասարդ կամք հզորանում էր փշրելու խավար կափարիչը։ Ու նորից էր կարդում տպագիր թուղթը Բրուտի տղան, Անա զիզու չար Անդոն։

Հնչում էր լուսաբացը։



* * *

Այն գարնանը ձյունը դժվար վեր կացավ։ Քարերը մերկացել էին, բայց նրանց հյուսիսային կողմը մնում էր ձյունը, որ լուսնյակ գիշերներին կապտին էր տալիս։

Բրուտ Ավագը էլ վերև չէր բարձրանում։ Գետերի ճանապարհը փակ էր, ամեն քարի հետևը մահ։ Էլ չէին առնում ո՛չ գավաթ, ո՛չ կարաս։ Նա Գյունեյ թաղի եզների հետ ման էր գալիս տաք ձորերում։ Մաշված եզները կոշտ լեզվով լիզում էին կանաչ մամուռը։

Նրանք հոգնում էին և փնչալով նայում քարերի արևադարձ կողմը, որոնում անշարժ, ինչպես քարերը։ Եզնարած Ավագը փաթաթվում էր կարպետի մեջ և կուչ գալիս եզների արանքում։

Երբեմն եզները մոտ էր քշում ձորին։ Դիմացը՝ մյուս ափին ամբարտակն էր, քարափի տակով անցնող առուն և փայտե նովը, որով ջուրը շառաչյով թափվում էր և դարձնում «էլեկտրիկու մաշինը»։

Ցերեկը քարայրն ամայի էր, դուռը կողպ։ Բրուտ Ավագը նստում էր քարի գլխին, ինչպես մեկը այն հեքիաթային ձևերից, որ կերտել էր մութ տարերքի քմահաճույքը։ Այդ արձանացած մարդը ամայի ձորի վրա մաղում էր այն տխուր երգերից, որոնց հնչյունները մաքուր են, ինչպես արցունքը, և հնամյա, ինչպես անտառի խշշոցը, գետի անվախճան գանգատը։

Բառեր չկային և ինչի՞ էր պետք բառը, երբ այդ ձորում ամեն ինչ ասում էր որդու մասին, նույնիսկ քարանձավի փակ դուռը, օջախի սևացած պատերը։ Մի՞թե բառը կարող էր անոթ դառնալ և պարփակել նրա հույզերը, որ խռնվել էին, ինչպես վերևում փոթորիկի հանդիպած կռունկների երամը։

* * *

Կարմիր Բանակի 84-րդ բրիգադը վրան էր զարկել լեռնաշղթայի երկարությամբ։ Հյուսիսից և արևելքից կարմիր գնդերը կիրճերով, ձերպերով առաջ էին գալիս. փշրելով սպարապետի զորամասերի հուսահատ դիմադրությունը։ Արևմտյան ճակատում, ուր անխորտակելի պարսպի պես կանգնել էր 84-րդ բրիգադը, առաջին թեթև ընդհարումներն էին։ Թնդանոթների երախները մունջ նայում էին քաղաքի կողմը։

Օղակված քաղաքը դարձել էր ռազմական ճամբար։ Ու թեև վխտում էին զինավառված խմբեր

գայլավազտեր, սակայն նրանց բոլորի դեմքին խարանված էր անխուսափելի պարտությունը, ինչպես վախճանը մահամերձի երեսին: Մի կանաչ հիդրա ջղաձգությամբ շարժում էր ծանր մարմինը, կծկվում էր, ինչպես փախուստ փնտրող օձը:

Իսկ ռազմաճակատը մոտենում էր, ինչպես ամեհի ալիքը:

— Գալիս են,— ասում էին իրար: Ոմանք ավելացնում էին «մերոնք», ոմանք՝ «նրանք», իսկ մնացածները միայն հաղորդում էին, որ գալիս են:

Գիշերը քաղաքում լույսեր չէին վառվում: Լիալուսինն էր ցոլում պղնձյա լարերի վրա և պարտեզներում հոսող ջինջ առուների մեջ:

Ու մի օր, արևի հետ, թնդանոթի արկը թռավ քաղաքի վրայով և պայթեց զորանոցների մոտ: Առաջին պայթյունը կարծես նրա համար էր, որ հաստատեր, թե գալիս են…

84-րդ բրիգադը խոսում է արճիճի լեզվով:

Սաստկացավ խուճապը: Գայլավազտերը հրա-



ման ստացան նահանջի ճանապարհը բռնելու:

Մարդիկ փակեցին դուռ և լուսամուտ, ովքեր ունեին դուռ ու լուսամուտ: Փողոցներից դեպի տները քաշվեցին նրանք, որոնց համար զենքը ծանոթ բան էր: Զարթնեց հույսը, թե շուտով նորից կառնեն մանգաղն ու գերանդին:

Անա զիզին քաղաքի փողոցներում մոլորվել էր՝ վախից, անհանգստությունից: Այդքան երկար նա երբեք չէր եղել քաղաքի փողոցներում: Խեղճ մայրըն ագահ լսում էր այն ամենը, ինչ խոսվում էր առաջխաղացող բանակի մասին:

Իր սենյակում, հետախույզ բաժնի սպան, ատամները կրճտացնելով, պատմում էր գունատ Մաշոյին, թե ամբողջ ձմեռ ծորից սիգնալ է տվել այն տղան, որ իրենց տան առաջ լուռ ու մունջ կապում էր էլեկտրալարը: Գամում էր և պատուհանի վրա ամրացնում գնդացիրը:

Իսկ շատ ու շիվար Մաշոն լցնում էր սնդուկները, կողպում, կապկպում: Նա լավ չէր հասկանում ամուսնու պատմածը, ինչպես դժվար դասը…

Մյուս օրը լեռան հետևից հրետանին սկսեց ռմբակոծումը: Քաղաքում այս ու այնտեղ լսվեցին պայթյունի որոտներ: Եկեղեցու խաչը թեքվեց, ճոճվեց, ինչպես ճյուղը: Ապա հանկարծ ընկավ ընկուզենու վրա և խրվեց գետին:

Միանգամայն անսպասելի կերպով ծորի կողմից քաղաք մտան չորս ձիավոր: Նրանց առաջից գնում էր մեկը, ոսկեգույն ձիու վրա: Նրանք մի վայրկյան կանգնեցին քաղաքի սահմանագլխում, ապա երբ որոտացին թնդանոթները, նրանցից երկուսը քշեցին գերեզմանատան կողմը, փռփռացնելով փոքրիկ կարմիր դրոշակները: Նրանք դրոշակները խրեցին գերեզմանատան բլուրի վրա, որպես հրետանու նշանացույց: Ապա քարափի քաշով քշեցին դեպի կամուրջը:

Այս անգամ թնդանոթը խփեց ուղիղ քարափին: Քարից կտորներ թռան դեպի ձիավորները: Ներքևից լսվեց պայթյուն:

— Դրոշակը շարժի՛ր,— գոռաց ոսկեգույն ձիավորը, արագ նայելով ծորի կողմը:

Մուխի մեջ կանգուն էր էլեկտրակայանը:

Ու ձիավորը փրփրած ձին ասպանդակեց դեպի կամուրջը, որտեղով քաղաք պիտի մտներ կարմիր հեծելազորը:

Ոսկեգույն ձիավորը ճեղքեց ամայի հրապարակը և քշեց կարճ փողոցով դեպի կամուրջը:

Այդ վայրկյանին պատշգամբից արճիճ տեղաց գնդացիրը: Մի կին ճչաց.

— Վա՜յ, բալա ջան…

Ձիավորը թեքվեց մի կողմի վրա և կախվեց, ինչպես հնձած հասկը: Փրփրած ձին խրտնեց ու սլացավ: Հեծվորի ոտքը մնաց ասպանդակի մեջ: Տաք մարմինը քարեքար դիպչելով շաղ տվեց արյուն և ուղեղ:

Փողոցի մեջտեղը շնչահեղձ պառկել էր Անա զիզին և լիզում էր որդու տաք արյան առաջին շիթը… Լիզում էր հողը, արյունը, երեսը քսում էր գետնին և լալում անմռունչ ձեռին:

* * *

Այն կողմերում այժմ էլ գարնանն ամպ է նստում: Մեր Գյունեյ թաղը կորչում է, ամպի միջից երևում է Ցից քարը: Բայց երբ քաշվում է

ամպը, երևում են քաղաքի տների կտուրները։

Ռուսաց «ժամի» տեղը կանաչ պարտեզ է։ Ջորը փոխվել է։ Այնտեղ սպիտակին են տալիս եկեղեցու տաշած քարերը։ Նոր հիդրոկայանն է, արևվառ և ընդարձակ։ Քարափից ներքև է իջնում լայն ճանապարհը։ Գարնանը դպրոցական երեխաներին տանում են ձորը և նրանց բացատրում են, թե ինչպես են աշխատում մեքենաները։

Նորոգ երկիր, նոր մանուկներ...

Դիպվածը ինձ էլ նետեց մեր հին թաղը։ Ես հաստատ քայլերով կոխում էի այն ճանապարհները, ուր խաղալով անցել է իմ մանկությունը։ Անձանելը, փրփրան ջուրը, բեղի թունավոր թփերը։ Իմ ընկեր Անդոն ասում էր, որ օձերը իրենց լեղին պատրաստում են նրա տերևից։

Բիբլիական Հոլբի նման խարխուլ տան առաջ նստել էր բրուտ Ավագը։ Նա գրկեց ինձ և ինչպես կույրը, շոյեց դեմքս։

— Անդոն, իմ Անդո՜ն...

Արցունք չերևաց նրա ցավից կծկվող դեմքի վրա, թեև ձայնը խուլ հեկեկանքից դողում էր։ Կարծես աչքերի հետ ցամաքել էին արցունքի ակները։

Մեր թաղի գերեզմանատանը թաղված է Անա զիզին։ Գերեզմանաքար չկա, ո՛չ գիր, ո՛չ հուշարձան։ Գարնանը կանաչում է թումբը, մոլախոտերը խեղդում են վաղահաս ծաղիկներին, ասես ապահով են, որ չի զարթնի Անա զիզին և նրա ոսկորե «ղմայթին» էլ չի բաղհանի։

Երեկոները քարափին շարվում են ուրիշ աղջիկներ, նրանց մանդոլինը նվագում է նոր երգեր։ Եվ երբ հոգնում են, սկսում են պարզ զրույցը։ Տղաներից մեկը ցույց է տալիս ձորի ճեղքված քարը և պատմում է բրուտի տղա Անդոյի կյանքն ու մահը։

— Կարմիր հեծելազորը քաղաք մտավ կամուրջի կողմից... Հրացանների վրա նրանք բերում էին Անդոյի արյունոտ մարմինը։

Էլ ի՞նչ։ Վա՞յր դնեմ գրիչս...

Բայց ինչու՞ են դողում մատներս այս ծով ուրախությունից։ Որ ես ժամանակի խոր ծալքերից իմ թույլ գրիչով վե՞ր հանեցի իմ մանկության ընկեր Անդոյի հերոսական դեմքը։

Ախ, ինչքան նոր Անդոներ կան այս թուխ պատանիների մեջ, որոնք հին քարափի գլխին, իբրև անգիր զրույց, թերթում են սկզբի լույս էջերը։

Ու դեռ մի անգամ ես համայն աշխարհում մեր թնդանոթները հզորագույն կշառաչեն հին խոսքը.

— Խաղաղությու՜ն խրճիթներին, պատերա՛զմ պալատներին։



## ԵՐԵՎԱՆ

Ինչքա՜ն սիրուն ես
Կանաչ Երևան,
Կարոտեցի քեզ,
Եկա տեսության։

Թուրակները քո
Զով ու մարդաշատ,
Փողոցներդ վառ
Լույսերով առատ։

Անցյալդ սև-մութ,
Ներկադ շողշողուն,
Դարերի ծնունդ
Երևան սիրուն։

ԱԻԴԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Երևանի № 57 դպրոցի
7-րդ դասարանի
աշակերտուհի

## ՑՈՂԸ

Իմ մեխակի թավիշ թերթին
Ցող էր նստել լուսադեմին,
Այնպես սիրուն, այնպես պայծառ,
Փայլփլում էր ինչպես գոհար։
Բայց արևը հենց որ առավ,
Իմ մեխակի զարդը կորավ։

ՍՈՒՍԱՆՆԱ ՕՀԱՆՅԱՆ
Իջևանի շրջանի Աչաջուր գյուղի
դպրոցի աշակերտուհի



## ԳԱՐՈՒՆ

Ծաղկեց մեր այգին,
Նոր շորեր հագավ,
Գարունը կրկին
Ծաղկունքով եկավ։

Գարուն է շնչում
Ամեն բույս ու ծառ.
Արևն է փայլում
Երկնքից պայծառ։

Բարով դու եկար,
Մեր գարուն ընկեր,
Բերիր անհամար
Ծաղիկ ու երգեր։

*ԱՆՆՄԱՆ ՔԱԼՈՅԱՆ*
*Թալինի շրջանի*
*Աշնակ գյուղի դպրոցի*
*3-րդ դասարանի*
*աշակերտուհի*

## ԱՄԵՆ ԱՌԱՎՈՏ

Դու բյուրեղ, պայծառ, լուսաստղ պոետ,
Արձանդ է կանգնած շեմքին դպրոցիս,
Դու հոգով խրոխտ, հայացքով քո սեգ
Ամեն առավոտ գերում ես հոգիս։

Հայացքիդ առաջ տիեզերքն է լուրթ
Քո հոգում լուսե հողը Նաիրի,
Ուր մինչ լուսավառ արևն ենք նետում,
Շունչն ու հևոցը իմ պայծառ դարի։

Թռչում է մի պահ միտքս որոնող
Հորիզոններն այդ դեռ ինձ անծանոչ,
Մի՞թե կանգնած եմ երգերդ կերտող,
Խիզախ պոետի արձանի առաջ։

*Ժ. ԴԱՄԱՂԵԼՅԱՆ*
*Երևանի Ե. Չարենցի*
*անվան դպրոցի*
*աշակերտ*






Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Ս. ԱԶԻԶՅԱՆԻ

Անահիտը մի շատ լավ բացիկ ուներ։ Նրա վրա նկարված էր յասամանի փունջ։ Այնքա՜ն գեղեցիկ էր այդ բացիկը, այնքա՜ն գեղեցիկ։ Անահիտն այդ բացիկը նվիրեց ընկերուհուն՝ Սեդային։

Սեդան սկզբում չէր ուզում նվերն ընդունել։

—Հարկավոր չէ,—ասում էր նա,—թող քեզ մնա։ Բա քեզ պետք չի՞։

—Ի՞նձ… Ինձ բոլորովին էլ պետք չի,—հավատացրեց Անահիտը։

Իհարկե, նա այդպես ասաց միայն այն պատճառով, որովհետև չգիտեր, թե ինչպես ընկերուհուն համոզի, նվերն ընդունել։ Թե չէ, ինչպե՞ս կարող է նկարը պետք չգալ։

Եվ բացի այդ, մի՞թե մարդիկ երբ նվիրում են միայն այնպիսի բաներ, որոնք իրենց պետք չեն…

—Դե լավ,—ասաց Սեդան,—քանի որ քեզ պետք չի՝ ես կվերցնեմ։

Բացիկն իրոք լավն էր։ Անահիտն էլի ուրիշ բացիկներ ուներ, բայց կարելի է ասել, որ դա ամենից էլ լավն էր։ Գույներն այնքան կենդանի էին, այնքան բնական, որ թվում էր, թե յասամանի փունջն իսկական է։

Հետո Անահիտն ու Սեդան սկսեցին գնդակ խաղալ։

Ձեռքի ափով գնդակը խփելով վեր-վեր էին գցում ու հաշվում այնքան ժամանակ, մինչև որ գնդակը ցած ընկներ։ Խաղը կշահեր նա, ով առաջինը կհասներ հարյուրի։

Երբ գնդակը գետին էր ընկնում, մյուսն էր վերցնում ու սկսում վեր-վեր գցել։ Բայց հանկարծ վեճ սկսվեց։

—Ես ոչ թե հիսունչորս էի, այլ վաթսունչորս,—ասաց Անահիտը։

—Ո՛չ, դու հիսունչորս էիր։

Ոչ մեկը մյուսի խոսքը չէր ուզում ընդունել։ Գնալով ավելի տաքացած վիճեցին։



—Դու խափլան ես,—բղավում էր Անահիտը:

—Խափլանը դո՛ւ ես,—իր հերթին նրա վրա գոռում էր Սեդան:

—Դե որ այդպես է,—վերջապես ընկերուհու վրա հարձակվեց Անահիտը,—իմ նվիրած բացիկը տուր:

—Նվերը ետ չեն ուզի,—ճչում էր իր հերթին Սեդան:

Բայց Անահիտն այնքան համառեց, որ Սեդան բացիկը տվեց ու արհամարհանքով ասաց.

—Ա՛ռ, թող քեզ լինի, մեծ բան է... խելք պետքս էլ չի...

Ու գնաց...

Մի փոքր անց, Անահիտը տխրեց, զգալով, որ լավ բան չեղավ: Մարդ այդպես է զգում այն ժամանակ, երբ մի վատ բան է անում, բայց դեռևս իր արածը կարգին չի պատկերացնում:

Նա ման էր գալիս մոլորված, չգիտեր ինչով զբաղվի, ուր գնա...

Հետո գնաց տուն, չնայած եղանակը շատ լավն էր ու կիրակի: Մոլորված նստեց անկյունում, և անմիջապես նրա աչքին ընկավ բացիկների ալբոմը:

Այն բացիկը, որի վրա նկարված էր յասամանի փունջը, մնացել էր ալբոմից դուրս: Անահիտը վերցրեց, որ նորից ալբոմի մեջ դնի, բայց մի պահ նայեց բացիկին: Երկար-երկար նայեց, կարծես առաջին անգամն էր տեսնում, հետո չգիտես ինչու՝ հիշեց Սեդայի խոսքը. «Նվերը ետ չեն ուզի»: Նա բացիկը



մի կողմ դրեց: Մինչև անգամ ձեռքը չգնաց, որ ալբոմի մեջ տեղավորի... Նորից երկար նայեց բացիկին: Հիմա նա առաջվա պես գեղեցիկ չէր: Անահիտին թվում էր, թե յասամանի ծաղիկները թառամել են, թվում էր, թե բոլոր-բոլոր գույները խունացել են, բացիկը դարձել է շատ հասարակ ու տգեղ...

# Աշուն

ԳՐ. ԵՂԻԿՅԱՆ

Աշունն եկավ ալ կապած,
Ոսկենկար շալ կապած,
Բերքով լցրած ծոցն ու բուռ,
Եկավ ընկավ դռնեդուռ:
Ձայնեց Սուսին, Սաթիկին.
— Օգնե՛ք,— ասաց,— տատիկին:
Խեղճ եմ, տկար, ուժահատ,
Եկողը ցուրտ, հոգսը շատ,
Եկեք առեք, ցած բերեք,
Ինչքան կուզեք, հա՛ կերեք:

Խնձոր ունեմ կարմրաթուշ,
Դեղձ ու սալոր, թուզ ու նուշ,
Ունեմ ընկույզ ու փշատ,
Ամեն ինչը կա ու շատ:
Բա խաղո՛ղը, խաղո՛ղը,
Ափսոս քիչ է քաղողը.
Դուք էլ եկեք, Սեթ, Ալեք,
Աշխատասեր իմ բալեք,
Բոլորդ եկեք ինձ օգնեք,
Շատվոր լինենք՝ չհոգնենք:





# ԽԱՉԱՏՈՒՐ



Ձմեռ



Արտավազիկ (7-րդ դար)

Հիսուն տարեկան դարձավ նկարիչ Խաչատուր Եսայանը, Հայաստանի բնության քնքուշ գույների երգիչը: Նրա վրձինը նկարեց Արարատն ու Արագածը, Սևանն ու մեր հայրենի Երևանը, Հայաստանի վարդերն ու ծաղկած դեղձենիները, տուղտածաղիկներն ու տերեփուկները, նրանց մեջ դնելով նկարչի իր ջերմ զգացմունքները, իր քնարական շոյող տրամադրությունը:

Խաչատուր Եսայանը տակավին լի է երիտասարդական ավ-



Գառնի



# ԵՍԱՅԱՆ



յունով, և նա հայ կերպարվեստի սրահները այսուհետև ևս կզարդարի իր նորանոր կտավներով, որոնք կսովորեցնեն մեզ ավելի լավ զգալ հայրենի բնության գեղեցկությունները:

Տպագրում ենք նկարիչ Խ. Եսայանի նկարներից մի քանիսը: Երեխաներ, հարստացրեք դրանցով դպրոցի պատկերասրահները և ձեր կոլեկցիաները:



*Բայա-Մարե* (Ռումինիա)



*Երևանի Լենինի անվան հրապարակը*

# Ճլդիկ խիզախը

Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ



Թե ինչպես՝ արեց,
Թե ինչպես չարեց,
Ճլդիկ Խիզախը
Հրացան ճարեց։
Թե այս աշխարհում
Կա մի անվախը,
Այդ ես եմ, ես եմ՝
Ճլդիկ Խիզախը։
Ասաց ու մեկեն
Հրացանն առավ

Եվ հպարտ-հպարտ
Անտառը թռավ։
Հե՜յ, առյուծ, աղվես,
Դեսը եկեք, դես,
Ճլդիկ Խիզախը
Մահ կբերի ձեզ։
Բայց հենց զենքն առավ,
Թրա՛խկ, կրակեց,
Խիզախի սիրտը
Ջայնից տրաքեց։

# ԾՈՒՅԼԸ

Ա. ԴԱՐԲՆԻ

Ծույլը նստեց
Մի քոսոտ ձի,
Մանգաղն առավ,
Գնաց հնձի։

Ամբողջ օրը
Քնեց մուշ-մուշ,
Հետո ելավ,
Ճաշեց անուշ։

Երեկոյան
Նա եկավ տուն,
Շատ էր հոգնած՝
Մտավ խոր քուն։





# ՇԱԽ-ՄԱՏ

Մ. ՎՇՏՈՒՆԻ

Փիսիկ սևուկ,
Փիսիկ իմ չալ,
Ձեք կարող դուք
Շախ-մատ խաղալ։
Դաշտ չեք հանում
Զույգ նավակը,

Ձի գրոհում
Հետևակը։
Ձեք էլ խոսում,
Լուռ եք, հանդարտ,
«Շախ» չեք ասում,
Ձեք անում «մատ»։
Աննպատակ
Շարժում եք ձին.

Լավ է գնաք
Դուք ձեր գործին։
Ի՞նչ է, հարմար
Բան չե՞ք ճարում.
Ջար մկներ կան
Մեր ամբարում։
Թողեք իսկույն
Ձեր լավ որսին,
Խաղը թողեք
Ինձ ու Սոսին։



Երազ տեսավ
Արտն էր հնձած,
Ինքն ուտում էր
Նոր թխած հաց։

Անուշ քնից
Երբ արթնացավ,
Նայեց շուրջը
Ու զարմացավ.

Հին վերմակը
Գլխին քաշեց
Ու երազում
Կրկին... ճաշեց։





Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

# ԱՍՏՂԱԴՐԱՄԸ



(Գերմանական ժող. հեքիաթ)

Ժամանակով մի փոքրիկ, որբ աղջիկ կար: Նա շատ աղքատ էր, մինչև անգամ քնելու տեղ չուներ: Մնացել էր միայն հագի շորը: Նա ապրում էր ուրիշների տված հացով, բայց ազնիվ էր ու բարի:

Մի անգամ անտառով անցնելիս, հանդիպեց նրան մի աղքատ մարդ ու ասաց.

— Ա՜խ, սովից մեռնում եմ, աղջի ջան, մի բան չունե՞ս ուտելու:

Աղջիկը իր հավաքած հացը տվեց մարդուն:

— Աստված օրհնի քեզ,— ասաց մարդը և շարունակեց իր ճամփան:

Հետո նա պատահեց մի երեխայի, որը լացով ասաց.

— Ա՜խ, այնպես եմ մրսում, մի բան տուր, որ գլուխս ծածկեմ:

Աղջիկը հանեց իր գլխաշորը ու տվեց նրան: Հազիվ էր մի քանի քայլ առաջացել, երբ պատահեց մի ուրիշ երեխայի, որը շոր չուներ ու սառչում էր ցրտից. նա հանեց իր շորը և տվեց նրան:

Օրն արդեն մթնել էր, երբ նա պատահեց մի ուրիշ երեխայի, որն ուզեց նրա շապիկը: Եվ փոքրիկ բարեսիրտ աղջիկը մտածեց.

«Մթին գիշեր է, ինձ ոչ ոք չի տեսնի. ես կարող եմ իմ շապիկը տալ այս երեխային»:

Եվ տվեց: Նա մերկ ու անօգնական կանգնել էր մութ անտառում: Մեկ էլ տեսավ, ինչ-որ աստղերի պես շողշողուն բաներ թափվեցին առջևը:

Երբ փոքրիկ աղջիկը վերցրեց դրանցից մեկը, տեսավ, որ դրամ է: Դրանք աստղերի պես փայլփլում էին:

Մինչդեռ նա ուրախ-ուրախ հավաքում էր աստղադրամները, ծառի հետևից դուրս եկավ մի մարդ և ասաց.

— Ազնիվ աղջիկ, ես այն աղքատն եմ, որ մեռնում էի սովից: Դու փրկեցիր ինձ: Քեզնից բաժանվելուց հետո, անտառից մի տոպրակ լիքը դրամ գտա և որոշեցի քեզ գտնել ու այդ դրամից քեզ էլ բաժին տալ: Բայց ես ոչ ոք չունեմ, չե՞ս լինի, որ դառնաս ինձ աղջիկ, գնանք միասին ապրենք:

— Կգամ, ինչու չէ,— ասաց աղջիկը, ու նրանք ձեռք-ձեռքի տված անտառից դուրս եկան:

Փոխադրեց՝ Ա. ԲԱԶԱՐՅԱՆ



Նկ. Ա. ԳԱԼԵՆՑԻ




(Պոեմ)

## Նախերգ

Այնտեղ, լեռների զմրուխտե գահին
Արծիվներ էին բազմում վեհապանծ,
Այնտեղ արծվանիստ ամրոցներ կային
Եվ խուղեր կային ծերպերին ծեփած։
Նոյ նահապետի հրաշքից ի վեր
Այն սեգ բերդերում ու խուղերում մութ
Իր հայրենական օջախն էր վառել
Մի բազմաչարչար, մի հին ժողովուրդ։
Հողմերի հանդեպ՝ մոլի, մահաշունչ,
Նա թեժ էր պահում օջախն հայրենի,
Նա մահ էր բռնում, բռնում էր և մութն,
Տանար էր կերտում քարայրից վայրի։
Սակայն բզկտվեց դարերի ճամփին,
Ջարերի ճամփին նա դարձավ ավար,
Նա խանձվեց, ծխաց, խառնվեց ամպին,
Եվ աշխարհով մեկ քշվեց հողմավար,
Նա մնաց արնոտ մոխիրների տակ,
Մեր սուրբ, սրբատաշ քարերի վրա,
Երգերում մնաց մեր ողբանվագ,
Մատյանների մեջ մեր մագաղաթյա։
Առասպել դարձավ ու դարձավ լեգենդ
Իր տառապանքի դրվագով ամեն։
Նա մարտիրոսվեց, նա հարյավ հավետ,
Նա դարձավ փառքի կոթող հայ-նամեն...

### 1

Դարեր, շատ դարեր մեզանից առաջ,
Երբ Գագիկ արքան ընկավ ողբակոծ,
Սուլթան Տուղրիլը սև հորդան առած՝
Խուժեց անտերունչ աշխարհը հայոց։
Սելջուկ ձիերի սմբակների տակ
Ամլացան հայոց դաշտերը բերրի,
Ավերակ դարձան բյուր շեն ու քաղաք,
Օձերոց դարձան և բույն բվերի։
Բայց հայոց բարձրիկ, հպարտ լեռներում,
Թառած շանթերի շնչի տակ անեղ՝
Իր թուր-կայծակին պատյան չէր դնում
Արծըվի կաթով զորացած մի ցեղ...

### 2

Լուր գնաց հասավ Տուղրիլ սուլթանին,
Թե՝ ո՞վ փադիշահ, ո՞վ ալեմի տեր,
Հայոց աշխարհում, քո թրի տակին,
Դեռ կա, ասում են, իգիթ մի ջահել,
Որ առած մի բուռ քաջեր իր նման,
Բազմել է հպարտ իր Արծվաբերդում,
Ապրում է այնտեղ անկախ, ինքնիշխան,
Եվ գահիդ հանդեպ գլուխ չի թեքում։

Փրփրեց Տուղրիլ սուլթանը անեղ,
Ձայն տվեց որդուն՝ իր զորավարին.
— Մահմու՛դ,—մռնչաց,—շո՜ւտ հասիր այնտեղ,
Խենջարդ խրիր սիրտը գյավուրի
Եվ գանգը բեր ինձ, որ գանգով նրա
Խմեմ հուր-գինի, սիրտս հովանա...
— Թող կա՛մքդ լինի, իմ արև՛, իմ հա՛յր,—
Ասաց, խոնարհվեց գոռոզ շահզադեն,—
Ջուկը ջուր կուզի, օձը՝ առապար,
Կովի դաշտ կուզի թևավոր բազեն...

### 3.

Բարի լույս բացվեց հայոց աշխարհին,
Բարի լույս բացվեց սեգ Արծվասարին։
Բարի լույսի հետ Սանթուրն արթնացավ
Ու ներքև նայեց, տեսավ, ի՜նչ տեսավ.
Տեսավ ձորերում, լանջերին զառ-վառ
Սև-սև մորեխի պարսեր անհամար։
Մորե՞խ։ Չ'է, զոր՛ք է, զո՜րք է բյուրավոր,
Փաթ տվել նստել բերդի չորս բոլոր։

Եվ ահա եկավ բանբեր մի տարեց
Ու տիրոջ բերնով այսպես բարբառեց.
— Է՜յ, գյավու՛ր,—ասաց,—բերդից դուրս արի.
Սելջուկն է տերը հայոց աշխարհի։
Դու ո՞վ ես, ի՞նչ ես, որ թագ ես առել,
Սուլթանի հողում սուլթան ես դառել։
Ո՞վ դու ինքնակալ, ո՞վ խելառ կտրին,



Դեռ նետ չի դիպել Սանթուրի կրծքին,
Դեռ գիտե բռնել իր թուր-կայծակին,
Թև-թևի դեռ կան արծիվները քաջ
Նրա մոտ, ամպոտ ծերպերին թառած։

4.

Եվ արնածարավ ամբոխը թաթար
Ռռնաց բերդի տակ յոթ գիշեր, յոթ օր։
Յոթ գիշեր, յոթ օր զարկվեցին իրար,
Փոշին ամպ կապեց բերդի չորս բոլոր։

Գոռոզ Մահմուդը՝ խաղք ու խայտառակ,
Դարձյալ կամեցավ հաղթած դառնալ ետ։
Առաջարկ արավ, թե՝ ե՜կ, հեռանանք,
Էնտե՛ղ, բաց դաշտում չափվենք իրար հետ:
Եվ արձակ դաշտում կուռ պատնեշ կապած՝
Կանգնեցին ոսոխ զորքերն իրար դեմ:
Ասպարեզ մտան Սանթուրը մեր քաջ
Եվ Թուրան երկրի Սահմուդ շահզադեն։

5.

Բազմել է գահին արքան թաթարաց,
Հնդուհավի պես փքված փառքի մեջ։
Քառասուն շայիր փանդիռներն առած՝
Ներբող են երգում փադիշահին մեծ:
Եվ կաքավում են կույսեր գեղանի,
Խլվլում, ինչպես բոցեր ալվլան,
Փրփրում է գավում հայոց հուր-գինին
Ջահել զինվորի արյունի նման:
Հրճվում է արքան, ժպտում բեղի տակ,
Բայց սրտում թաքուն տնքում է մի ցավ.
Ի՞նչ եղավ որդին այսքան ժամանակ,
Թե որ հաղթել է, ինչու՞ ուշացավ...
Բայց կաց, այն ի՞նչ էր, թմբու՞կ էր թեթև,
Ջիու դոփյու՞ն էր, որ լսվեց ցածում.
Ելավ գահույքից արքան հևիհև
Ու պատուհանից վար նայեց իսկույն:
Նայեց ու շանթվեց։ Գալիս են...սակայն
Առջևում չկա դրոշն հաղթական,
Գալիս են իբրև ջարդված ելուզակ,
Որն առանց վահան, որն առանց նիզակ,
Որն առանց չեքմե, որն առանց չալմա,
Որը կաղալով, որն էշի վրա,
Գալիս են պարտվա՛ծ, ծեծկվա՛ծ, արյունո՛տ.
Ամո՜թ քեզ, Տուղրի՛լ, բյուր-հազա՜ր ամոթ...

Լռեց նվագը։ Ու մեկեն հանկարծ
Սերայը թողին թե՛ շայիր, թե՛ հարն։
Ներս մտավ փաշան, չոքեց դռանը,
Զոքեչոք սողաց մինչև սուլթանը.
Խուլ հեկեկաց ու շուրթերով դողդոջ
Թեքվեց համբուրեց մուճակը տիրոջ.
— Ո՜վ բազումողորմ սուլթանաց սուլթան,
Մորթի՜ր քո նորտին կամ նետիր զնդան.

Թե ձեռք չես քաշել քո դալար կյանքից,
Եկ աղ ու հացով հլու-հպատակ
Ու դիր քո սուրը նրա ոտքի տակ։

Եվ Սանթուրն այսպես տվեց պատասխան.
— Շա՜տ է շտապել ձեր Տուղրիլ արքան:

Նա քառասուն տարի կռիվ էր արել,
Նա քառասուն հազար ամրոց էր առել,
Եվ արդար կամքով երկնային մեր հոր՝
Տուն էր դարձել միշտ փառքով փառավոր։
Բայց ալլահն, ավա՜ղ, բարկացավ վրան,
Գյավուրի ձեռքով խիստ պատժեց նրան.
Նա կորցրեց մարտում բյուր-բազում ասկյար,
Նա կորցրեց մարտում բյուր տեգ ու ասպար,
Նա գերի թողեց որդուդ վիրավոր
Ու վերադարձավ ջարդված, գլխիկոր։
Արդ՝ հրամայի՛ր, քո նո՜րտն եմ, գերի՜դ,
Շան պես լիզում եմ փոշին ոտքերիդ,
Կամ ների՛ր, ո՜վ տեր, և կամ տուր մահի,
Օրհնյա՜լ եղիցի կամքը ալլահի...
— Ինչպե՞ս, իմ որդին վիրավո՞ր, գերի՞,
Իմ որդին ձեռքին պիղծ գյավուրների՞...
Մռնչաց արքան, գահույքից ոստնեց,
Ու վրա պրծավ վայրի վագրի պես,
Վայրի վագրի պես ահեղանիրան՝
Ճանկեց փաշային ու ընկավ վրան...

6

Եվ հրամայեց արքան այնուհետ.
— Դեսպաններ հղեք հայոց Արծվաբերդ.
Տարեք Սանթուրին քառասուն պարկ արծաթ,
Ոսկի դահեկան քառասուն հազար հատ,
Քառասուն հատ ֆարսի խալի ոսկեծոպ,
Հնդու աշխարհի բեհեզ քառասուն թոփ,
Արաբիո քառասուն հրեղեն նժույգ,
Քառասուն շարմաղ հարճ ու քառասուն ստրուկ,
Եվ ողջույններս՝ փաշային էրմեն։
Եվ ապա ասեք՝ ոխ չունեմ իր դեմ,
Միայն թե գերված իմ որդուն ինձ տան,
Ես իր աշխարհից կքաշվեմ կերթամ...

Ինչպես որ ասաց, այնպես էլ արին։
Երբ արև զարկեց Նեմրութա սարին,
Ճանապարհ ընկավ շքեղ մի քարվան,
Արքայավայել ընծաներ վրան։
Քարվանը գնաց։ Բայց Տուղրիլ արքան
Քարվանի դարձին չսպասեց այնքան։
Հազիվ յոթը օր, յոթ գիշեր անցավ,
Քարվանն իր բեռով ետ վերադարձավ։
Դարձավ քարվանը, և ա՜յ զարմանք բան,
Վրան՝ սուլթանի վիրավոր տղան...

7

Այնժամ սուլթանը կանչեց միրզային,
Թե՝ եկ թուղթ հղենք էրմեն փաշային։
Եվ նստեց միրզան գահույքին ընդմերձ՝
Ծնկներին դավթար ու ձեռքին ղալամ։
Եվ գրեց. «Տուղրիլ փադիշահից մեծ
Էրմենիո Սանթուր փաշային՝ սալա՜մ։





Եվ ես՝ սուլթանաց սուլթանս անպարտ,
Ես՝ որդիս Շամսի-ասում եմ քեզ արդ.
Դու գերի առար իմ քաջ զավակին,
Ես քեզ հղեցի գանձ ու փրկագին,
Բայց ամենը դու մերժեցիր լռին
Ու Մահմուդ որդուս ետ տվիր, բերին։
Ե՛ս, որ աշխարհն եմ չափել տակն ի վեր,
Ե՛ս, որ ցեղեր եմ արել բնավեր,
Ես ցարդ չեմ տեսել այդպես հրաշք բան,
Ե՛ս, ամենակալ սուլթանաց սուլթան։
Ասում են, որ դու իգիթ ես, Սանթու՛ր,
Որ ունես, իբրև, կայծակնացայտ թուր,
Որ, իբրև արծիվ, արծըվի սրունդ.
Մեջքդ չես արել երբեք թշնամուդ։
Արդ ասում եմ ես. ո՛վ դու արծվազուն,
Եկ ինձ մոտ, տեսքդ տեսնել եմ ուզում։
Փույթ չէ, թե իրավ քո թուր-կայծակին
Խոցել է սիրտն իմ, իմ քաջ զավակին։
Չ՞է որ ասել են՝ թող ձի՛ լինի ձիդ,
Դոստդ դո՛ստ լինի, դուշմանդ՝ իգի՛թ...»
Թամբեց բանբերը նժույգն իր աշխետ,
Հեծավ ու թռավ դեպի Արծվաբերդ։

8.

Կարդաց իշխանը թուղթը սուլթանի,
Կարդաց ու ընկավ մտածմունքի մեջ.
«Սուլթա՞նն ով, դու՞ ով, աստված խերն անի,
Քո ի՞նչն էր, որ քեզ հրավերք հղեց։
Գուցե քո վսեմ վարմունքի դիմաց
Զարթնել է մա՞րդը սրտում սև դևի։
Գուցե աղբյու՞ր էլ կա հատիկ մի գանձ,
Դև է, մի քիչ էլ մարդ է երևի։
Թե մերժես, նա քեզ երկչոտ կկարծի։
«Դուանն է, կասի, նա ամլան դառնում,
Ուխտի եմ կանչում, կանչում եմ հացի,
Իսկ ինքը մկան ծակն է ծախ առնում»։
Թող լինի՛, ինչ որ կամքն է քո վերին,
Ո՛վ արարիչ տեր, երկնավո՛ր արքա։
Թե վինակված է, ետ կգամ կրկին,
Թե չէ՝ ամենուր մահը կա ու կա...»

Իսկ ալեհորուս ծերերն ասացին.
-- Մի՛ գնա, որդի՛, նա դուշմանն է քո.
Նա թույն կխառնե քո ջրին-հացին,
Նա գուբ կփորե ոտներիդ ներքո։
Հիշե հուռութքը պիղծ Շամիրամա,
Հիշե Շապուհի խոստումները սին,
Հազկերտին հիշե ու դաշնը նրա,
Եվ այն խաչապաշտ աղվես Վաղեսին։
Մի՛ գնա, որդի՛, նա դուշմանն է քո,
Նա գուբ կփորե ոտներիդ ներքո...

Բայց իշխանն, ավա՜ղ, դեռ ջահել էր, խակ,
Սուրը դեռ կտրուկ և արյունը տաք։
Էլ ի՞նչ ականջեր նա այլոց կանչին,
Էլ ի՞նչպես սանձեր նա իր աշխետ ձին...

9.

Իր շքախմբով Սանթուրը եկավ,
Սուլթանի դուշմանն ու հյուրը եկավ։

Փողեր հնչեցին ի ցույց հարգանքի։
Բացվեց արծաթե դուռն ապարանքի,
Դուրս ելավ ինքը՝ արքան մեծափառ,
Ելավ ու քաջին չափեց վերից վար.

Իրոք հսկա էր Սանթուր իշխանը,
Բազուկներ ուներ նա մի-մի գերան,
Մի կալատեղ էր նրա վահանը
Եվ կայծակնացայտ սուր ուներ վրան։

Եվ իր պալատում փադիշահը մեծ
Հայոց քաջի հետ զրույցի նստեց։
— Սանթու՛ր,—ասաց նա,—մեկնի՛ր միտքըդ ինձ,
Ինչու՞ խորշեցիր իմ հղած գանձից,
Եվ ինչու՞, ո՛վ դու, անմի՛տ պատանի,
Պարտված ոսոխիդ թողիր կենդանի։

Եվ Սանթուրն այսպես տվեց պատասխան.
— Թող ապրա՛ծ կենա իմաստուն արքան,
Իմ պապուպապերն ավանդել են ինձ,
Թե՝ պատառ չառնես օտար սեղանից.

Սեղանից՝ օտար. արնախում ցեղի,
Ուր գինին մաղձն է զրկված անմեղի,
Ուր հացն արնահամ, ջուրն արցունք է տաք,
Ուր խինդը ողբ է, պատիվն՝ անարգանք։
Մեր նախնիք մեզ հար թողել են ավանդ,
Որ արդար բազկով վարենք հող ու հանդ,
Կառուցենք շեներ, տաճար ու պալատ,
Բայց միշտ հարամու ցեղեր վայրենի
Սուրբ հողն են խուժել մեր սուրբ հայրերի...
Մենք սուր ենք պարզել սրի դեմ օտար,
Արյամբ ենք ցողել ամեն թումբ ու քար,
Եվ ապրել ենք, կա՛նք. Իսկ դու, ո՞վ արքա,
Ջուր մի՛ զարմանա, զարմանք բան չկա,
Որ ես մերժեցի գանձերդ բոլոր
Ու վերադարձրի որդուդ վիրավոր։
Իգիթ չէ բնավ, կնամա՛րդ է նա,
Ով սուր է քաշում տկարի վրա։
Բայց որդիդ նորեն թե ելնի ոտի
Եվ նորեն մեր սուրբ հողը կոխոտի,
Այնժամ իմ ձեռքը նրան չի՛ գթա,
Սրին սրամերկ ընդառաջ կերթա։

Եվ սուլթանն ասաց խուլ մռնչոցով.
— Չինաց Շանգ-Շենգից[1] մինչև Վանա ծով,
Մինչև ծիրերը արար աշխարհի,
Կտրեց ու անցավ սուրը թաթարի։
Բայց լոկ դու՛ ելար ճամփիս, ո՞վ Էրմեն.
Դու՞ հանդգնեցիր սուր քաշել իմ դեմ։
Եվ արդ՝ իմացի՛ր, թե բան է. հանկարծ
Միակ իմ որդուց բաժանվեմ անդարձ,
Իմ դեմ կխամրի քո թուր-կայծակին,
Անապատ կանեմ քո երկիրը հին,
Փոշի կդարձնեմ ու կտամ քամուն,
Կջնջեմ իսպառ քո ցեղն աշխարհում։
Իսկ թե ալլահը ժպտա քաղցրագին,
Կյանք բաշխի իմ քաջ, սիրած զավակին,
Ես քեզ կբաշխեմ թե՛ ամրոց, թե՛ կյանք,
Զի իգիթ ես դու և այսքան շիտակ։
— Պարգև չեմ հայցում ես քեզնից, արքա՛,
Ինձ կյանք ու ամրոց իմ սուրն ինձ կտա,
Իսկ որդիդ, թե իմ սրով է ընկել,
Դժվար թե տեղից վեր կենա մեկ էլ։

Դառնորեն ժպտաց թաթարաց արքան.
— Ես կկտրեի լեզուդ, անզգա՛մ,
Թե չլինեիր այսքան շիփ-շիտակ,
Թե չլինեիր հյուր իմ հարկի տակ...

1. Չինական պարիսպ

Տե՛ր ընդ քեզ։ Գնա՛, հանգիստ առ մի քիչ,
Հոգնած ես, անշուշտ, երկար ճամփեքից
Դեհ, բարի գիշեր։ Հենց որ լուսանա,
Կճամփեմ կրկին ամրոցդ գնա,
Ձեռքս չի բռնում։ Ափսո՛ս է, իրավ,
Որ սեգ գլուխդ դառնա գինու գավ...

10.

Առավոտ բացվեց կարմիր ճաճանչով,
Առավոտ բացվեց արտույտի կանչով...
Չէ՛, մութո՛վ բացվեց,
Սև բոթո՛վ բացվեց...

Լսեց։ Ու ռռնաց թաթարաց արքան,
Մռմռքաց կյանքում առաջին անգամ,
Հանեց ատլասը, հագավ սև շորեր,
Ու մոխիր ցանեց գլխին ալեհեր...

11.

Իսկ զորապետներն, հեքիմները ողջ
Ահից մոմ կտրած խորհում են դողդոջ,
Ալլահ են կանչում, որ նա խնայի,
Որ մեղմի ահեղ ցասումն արքայի։
Եվ արդ՝ ալլա՛հը եղավ բարեգութ,
Շեյխի բերանով տվեց մի խորհուրդ։
Անսալով նենգմիտ խորհուրդին նրա,
Շքեղ մի փաթեթ ձեռքերի վրա՝
Սերայը մտավ զորապետը մեծ,
Խոր գլուխ տալով՝ սուլթանին դիմեց.
— Տե՛ր իմ, վաղ կամ ուշ՝ մահի՛նն ենք դարձյալ...
Ասաց, ետ տվեց փաթեթը յոթծալ։
Մի սուր շողշողաց փաթեթից նազուկ,
Բացվեց դյուցազնի մի արնոտ բազուկ։—
Բայց մխիթարվի՛ թող սիրտդ տրտում,
Չէ՞ որ այս թուրն է շանթել քո որդուն,
Ա՛յս բազուկն է քեզ արել թևաբեկ,
Ոչ թե մի տկար, մի դողահար ձեռք...

Բայց հեգնեց արքան նենգ զորապետին.
— Օթախում հե՞շտ էր հաղթել իգիթին.
Թողած անառիկ իր Արծվաբերդը,
Բերիր, որ կապես՝ նո՞ր չափվես հետը...

Հեգնեց, բայց վշտի մի բեռ ընկավ ցած.
— Էս թուրը թող ինձ հուշ մնա,— ասաց,—
Ձեռքը որդուս հետ հղեցեք Թուրան,
Որ երբ Սահմուդի մայրը լա վրան,
Գովել կարենա զավակին իր քաջ
Ուրիշ քաջերի մայրերի առաջ...

12.

Եվ թաթար արքան զորքն առավ գնաց,
Հայոց ամրոցը անձնվան մնաց...

Իսկ հայ արծվազարմ զորավարի դին
Թաղեցին բարձրիկ սարի գագաթին,
Ուր որ ամպրոպն էր ճայթում խելագար,
Ուր շանթերն էին թրատում իրար,
Ուր ազատաշունչ հողմով օրորուն՝
Հայոց սևաթույր արծիվն էր թառում...



Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

## ԹԵ ԻՆՉ ՊԱՏԱՀԵՑ ԱՅՆ ԲԱՆԻՑ ՀԵՏՈ, ԵՐԲ ԵՍ ՍԿՍԵՑԻ ԱԾԻԼԵԼ ՄԵՐ ԱՆԴՈՅԻՆ...

ԱՂԱՎՆԻ

Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

*Մեր ընտանիքում ամենից մտերիմը ես ու Անդոն էինք։ Նա թեև ինձնից մեծ էր երեք տարով, բայց էլի չէր հրաժարվում իմ մտերմությունից։ Այսինքն, ուզենար էլ, չէր կարող հրաժարվել, քանի որ այդ մտերմության հիմքում մի քանի շատ զորավոր պատճառներ կային։ Հենց թեկուզ Անդոյի բեղ-մորուքը։ Նրա թուխ ու կլորիկ դեմքին դրանք հայտնվեցին միանգամից և սկսեցին աճել այնպիսի եռանդով, որ մեր բոստանի գազարն էլ, թեկուզ ջրելուց հետո, այդպես չէր փունջում։*

*Երևի կմտածեք, թե հապա ինչպե՞ս, ամեն մի ջահել տղա էլ ինչ-որ մի ժամանակ բեղ ու մորուք պիտի ունենա ու եթե ուզում է դրանցից ազատվել, աշխարհում սափրիչներ կան։ Այդ ճիշտ է, իհարկե, բայց մեր Մելիք հորեղբայրը շատ էր զայրանում այն ջահելների վրա, որոնք հենց որ մի փունջ մազ էին հայտնաբերում իրենց ծնոտներին, վազում էին Մկրատ-Մանասի մոտ։*

*— Իբրև թե տեսեք, տեսեք, ես էլ տղամարդ եմ, — փնթփնթում էր նա ամեն անգամ, երբ սափրիչի մոտ էր գնացած լինում ու այնտեղ հանդիպում էր գյուղի ջահելներից մեկին ու մեկին։ — Տղամարդությունդ թրաշվելո՞վ պիտի հաստատես։ Հլա մի, խաթերս համար, զուլթանի խոփը մեն-մենակ ակոսից դուրս քաշի՛, նոր կերևա...*

*Զուլթանի խոփը մեն-մենակ ակոսից դուրս քաշելը ծանր գործ էր, իհարկե, ու ես չեմ կարող երաշխավորել, որ մեր Անդոն մեջքը չէր ջարդի այդ ծանրության տակ։ Բայց ախր Մելիք հորեղբայրն էլ, որ սովորություն չուներ իր մտածածը ուղղակի ասելու, զուլթանի պատմությունը մեջտեղ էր բերում բոլորովին ուրիշ մտադրությամբ։*

*Բանն այն է, որ մեր գյուղում տղամարդիկ սափրվում էին ոչ թե դրա համար կանխիկ դրամ վճարելով, այլ ապառիկ՝ կալի վրա ցորեն, գարի կամ կտավհատ տալու պայմանով։ Ու Մկրատ-*

Մանասն էլ այսպիսի կարգ էր սահմանել. ոչ ցուցակ էր պահում, ոչ գիր ու դավթար։ Սափրում էր մարդկանց, «անուշներս» ասելով ճամփու դնում, իսկ կալ ու կուտի ժամանակ պարկն ու կշեռքն ուսին հայտնվում թեղի գլխին։ Ոչ ոք նրան չէր հարցնում, թե իրենց տանից քանի տղամարդ և քանի անգամ են սափրվել։ Մկրատ-Մանասն ու իր խիղճը, կես կոտ ցորեն պահանջեր, կտային, մեկ, մեկուկես պահանջեր, էլի կտային, քանի որ տղամարդկանց երեսի բուսականությունն, ինչպես գլուխը, շատ աններես բան է, ու նրանք իրենց ողջ կյանքում կախման մեջ են սափրիչներից։

Այսպես էլ առատ վճարում էին մարդիկ Մկրատ-Մանասին ունեցած ու չունեցած պարտքերը և հետո նստում հաշվում, թե ինչքան ցորեն կավելանար իրենց ամբարներում, եթե աստված խիղճը միտք դներ ու գոնե գյուղացի տղամարդկանց աշխարհ բերեր առանց բեղ ու մորուք ունենալու ախուր ապագայի...

Դե, այս բոլորից հետո մեր Անդոն էլ ինչպե՞ս կարող էր սափրիչի դռնով անցնել, երբ հենց միայն Մելիք Տորեցոր մորուքն էլ մեկ վրա ածացին ծախս էր նստում։

— Էլ ճար չկա, — մի անգամ ինձ դուրս կանչելով բողոքեց Անդոն. — մեռածի մասին չեմ մտածում, բայց ախր աղջիկներն են վրաս թարս նայում։ Ուզես, չուզես, միաժամանակ ինձ պիտի թրաշես...

Եվ ահա Անդոյի նման կտրիճն ինձ իր գլխին Մկրատ-Մանաս էր կարգում, ուրեմն ես էլ իմ պայմաններս պիտի թելադրեի նրան։

— Կթրաշեմ, բայց, տես, հա, ինձնից թարսու գործեր չլինեն։

— Այսինքն, ի՞նչ գործ...

— Կոմսոմոլի ժողով ես գնում։

— Է, հա, գնում եմ, հետո՞։

— Ինձ էլ պիտի տանես։

— Տանեմ, բայց ախր ոչ մի աղջիկ չկա...

— Դե, ինձ որ տանես, մի աղջիկ կլինի, էլի։

— Բայց դու դեռ փոքր ես և կոմսոմոլ էլ չես...

— Ի՞նչ անենք։ Մի ժամանակ դու էլ փոքր էիր, իսկ հիմա բեղ ու մորուք ունես։ Ուրեմն ուրիշներն էլ կարող են մեծանալ։

Մեր բանակցությունը վերջացավ երկուսիս համար էլ ձեռնտու պայմանով, նա խոստացավ ինձ տանել իրենց ժողովներին, ես էլ խոստացա նրան սափրել, մոռանալով, որ այդ գործի մեջ միանգամայն տգետ եմ։

— Վնաս չունի, — սրտապնդեց Անդոն, — տեսել ես, չէ՞, թե ինչպես են քերում տրեխացու կաշին։

— Տեսել եմ։

— Դե, ուրեմն այդպես, — ասաց նա և իր լայնաշերտ, սուր դանակը խոթելով ձեռքս, իր դունչն ու մռութն էլ դրեց իմ տրամադրության տակ։

Սկսեցի քերել այնպիսի ոգևորությամբ, որ քիչ հետո Անդոն գունատվեց, իսկ երբ այտերն այնքան արյունոտվեցին, որ գունատությունն այլևս չէր երևում, նա կամացուկ հառաչեց.

— Մի քիչ էլ... կամաց, էլի, բույրիկ ջան...

Մի երկու փորձից հետո ես վարժվեցի իմ նոր արհեստին, Անդոյի այտերն էլ՝ իմ դանակին և այլևս գործը հաջող էր ընթանում։ Անդոն էլ ինձ տանում էր իրենց կոմերիտական հավաքույթներին, բայց ես տեսնում էի, որ նա և իր ընկերները, ամեն անգամ մի առիթ գտնելով, ինձ հեռու էին պահում իրենց գործերից։

Կոմերիտականները սովորաբար հավաքվում էին դպրոցում, որ բնակվում էր մեր կոմերիտական ուսուցիչ Սերոբը։ Ու ինչ որ Անդոյի ետևից քարշ գալով ես հայտնվում էի ընկեր Սերոբի սենյակում, նա անմիջապես ինձ մի որևէ գործի էր դնում.

— Լսի՛ր, Մանուշակ, փոքր աղբյուրից մի դույլ ջուր բեր, — կարգադրում էր նա, դույլը ձեռքս տալով։ Աղբյուրից ջուր բերելը, իհարկե, դժվար բան չէր, բայց երբ ամբողջ գյուղը միայն մի հատիկ աղբյուր ուներ և երկոտանիներից բացի դեռ չորքոտանիներն էլ դրա հաշվին էին ծարավում, ուրեմն ջրի գնացողը պիտի գիտենար, որ երկու-երեք ժամ հետո միայն հերթը իրեն կհասներ։

Այս պատճառով էլ միշտ ուշանում էի այնպես, որ երբ ջուրը բերում տեղ էի հասցնում, ժողովն արդեն վերջացած էր լինում։ Բարկանում էի





ինքս ինձ վրա, Անդոյի վրա, բայց ի՞նչ կարող էի անել։

Այսպես էլ ահա ես «մասնակցեցի» նրանց բոլոր ժողովներին մինչև այն օրը, երբ ինձ այլևս ջրի չուղարկեցին։ Այսինքն՝ էլի կուղարկեին, եթե ես Անդոյի հետ միաժամանակ ներս մտնեի, բայց մտա բավականին ուշ։ Իմ բախտից, սենյակում աղմուկ էր, ծխախոտի ծուխն էլ այնպես էր թանձրացել, որ չղջիկն էլ ճամփան կմոլորեր, ուստի ինձ չնկատեցին։ Քաշվեցի մի անկյուն և սկսեցի լսել։

Նրանք բոլորը միասին զոռզոռալով ինչ-որ թատրոն անունով խաղի մասին էին վիճում, որին աղջիկներն էլ պիտի մասնակցեին. հակառակ դեպքում, ընկեր Սերոբն սպառնում էր տղաներին յուբկա հագցնել։

Նրա այդ սպառնալիքից տղաները շատ անհանգստացան, ու Գարոն բոլորի կողմից հայտարարեց, որ պարանը կգնեն վզները, կկախվեն, բայց յուբկայով մարդկանց աչքին չեն երևա։ Գարոյի հայտարարությունից էլ ես վիրավորվեցի և, քանի որ մեր գյուղի աղջիկներից ոչ մեկը ներկա չէր, որոշեցի ինքս նրանց կողմից մի կծու պատասխան տալ Գարոյին։ Բայց ես դեռ նոր էի դուրս սողացել իմ թաքստոցից, երբ ընկեր Սերոբը թանկագին գանձ գտնողի հրճվանքով հարձակվեց ինձ վրա.

— Տղանե՛ր, մի սրան տեսեք, իսկական աղջիկն այստեղ է, իսկ մե՞նք...

— Եթե հավանոցում վառեկ չճարվի, աշնան կոթրնձագն էլ վառեկի տեղ կանցնի, — քմծիծաղեց Գարոն։

Այս անգամ էլ մեր Անդոն վիրավորվեց ու ձեռքերը գրպանները խոթելով, սպառնալից մոտեցավ Գարոյին.

— Մեր ունեցածին հավան չես, քո քույրը հասած աղջիկ է, ուրեմն բեր, էլի, էլ ինչո՞ւ ես ուրիշներին մասխարա գցում, — փնչաց նա։

Իհարկե, ես հասկացա, որ Անդոյի վրդովմունքի պատճառը ինձ հավի ծագ անվանելը չէր։ Գարոն էլ այդ հասկացավ ու տղաներին աչքով անելով ասաց.

— Էհ, եթե դու կհամաձայնես, որ մեր Շամամը էլ թատրոն խաղա, ես հակառակ չեմ...

Անդոն մինչև ականջները կարմրեց ու ոչինչ չասաց.

— Հը՞, ի՞նչ մտքի ես, — շարունակեց նրան նեղը գցել Գարոն։

— Դե լավ, ինչ ես տղայի հոգու հետ խաղում, — սատանայաբար ծիծաղեց Վահանը, — ես, օրինակ, եթե մեկի վրա աչք ունենամ, իմ հավանած աղջիկը թատրոն չէ, թեկուզ փահլևան էլ խաղա, էլի սիրտս նրանից չի կտրվի։ Այդպես չէ՞, Անդո...

— Ճշմարիտ է, Վահան ջան, — շփոթված քրթմնջաց Անդոն։



Անդոյի պատասխանը հարցը լուծեց, և այնուհետև ամբողջ մի ամիս մենք պատրաստում էինք մեր առաջին ներկայացումը։

Ես գիշերները չէի քնում և անգիր էի անում իմ դերը։ Շամամը նույնպես բարեխղճորեն անգիր էր անում, բայց փորձերի ժամանակ խիստ շփոթվում էր ու իրեն կորցնում, երբ փեսացուի դերակատար Անդոն ձեռքը նրա ուսին էր դնում ու քնքուշ խոսքեր ասում.

— Ձեզավ, Շամամ, ինչո՞ւ ես շփոթվում, սա հո իսկական չէ՛, ընդամենը թատրոն ենք խաղում,— սիրտ էր տալիս ընկեր Սերոբը, մոռանալով, որ դրանով էլ խեղճ Անդոյին էր շփոթեցնում։

...Գարոյենց ընդարձակ գոմից արդեն դուրս էին տարված անասունները, հատակը մաքրված էր, աթարի քառակուսի կտորների վրա հարմարեցված էին նստարան-տախտակները և գյուղի երեխաները կեսօրից արդեն եկել շարվել էին առաջին շարքերում։

Երբ նավթի ճրագներով լուսավորված գոմում այլևս շարժվելու տեղ չկար, ու մենք էլ արդեն մտել էինք մեր բեմական զգեստների մեջ, ընկեր Սերոբը անհրաժեշտ համարեց ժողովրդին բացատրել, թե ինչ բան է թատրոնը։ Նա դեռ խոսում էր, երբ Անդոն բեմական հագուստներով մոտեցավ ու ականջին բշշաց.

— Ընկեր Սերոբ, Շամամը փոշմանեց, չի խաղում...

Ընկեր Սերոբը միայն մի պահ շփոթվեց, բայց իսկույն հավաքեց իրեն ու հանգիստ ասաց.

— Ոչինչ, ես կխաղամ, իսկ Շամամի համար եղբայրը պատասխան կտա...

Անդոյի թախիծը կտրվեց։ Իմ գործն էլ դժվարացավ։ Ախր երբ ջահել հարսի դերակատարը Շամամն էր, ես փորձերի ժամանակ, իբրև ավագ տեգրակին, չանչում էի նրան ու դեռ մազերն էլ պռճկոտում, իսկ հիմա չէի կարող նույնն անել իմ ուսուցչի նկատմամբ, որը, բացի այդ, մազեր էլ չուներ...

Բայց ընկեր Սերոբը անձնազոհ մարդ էր և գործի հաջողության համար թույլ տվեց, որ ես պռճկոտեմ իր քաչալ գլուխը։

Ուրախ ու աղմկոտ էր մեր առաջին ներկայացումը։ Մարդիկ այնքան էին ոգևորվել, որ խաղի ամենալուրջ պահին տեղներից բարձրանում էին ու իրար հարցնում.

— Ա՛յ ժողովուրդ, էս Նալբանդի խաղացողը մեր նախրապանենց Վահանը չէ՞...

— Նալբանդն ես ասում, բա ընկեր Սերոբը, որ կնկա շոր է հագե՞լ...

— Էն ջահել կնի՞կն ով է, համա թե դարաչին է, հա՞,— ինձ մատնանշելով կանչում էին ուրիշները։

Մարդկանց հանգստացնելու համար գյուղխորհրդի նախագահ Աղանը ճիպոտը ձեռքին նստել էր բեմահարթակի մի անկյունում, կուսբջիջի քարտուղար Ենոքն էլ՝ մյուս։ Եվ հաճախ նրանք ստիպված էին լինում մեր խաղն ընդհատել ու դիմել տղաներին։

— Քավոր Սմբատ, համբերիր էլի՜, մեծ մարդ ես...

— Խնամի Վարդանուշ, լավ էլի՜, սպասիր, տեսնենք վերջն ինչ է լինելու...

...Իսկ վերջն այն եղավ, որ գյուղում սկսեցին թատրոն-Մանուշակ կանչել։ Չէի վիրավորվում, բայց Մելիք հորեղբորից էի քաշվում։ Ես էլ, Անդոն էլ միահամուռ կարծում էինք, որ նա մեր բռնած գործից տեղյակ չէ, քանի որ ներկայացմանը չէր եկել և, առհասարակ, այդ մասին չէր խոսում։ Բայց երբ մի օր Անդոն նորից իր զուռնէ ու մուռթը դրեց իմ տրամադրության տակ, որպեսզի ածիլեմ, Մելիք հորեղբայրը եկավ կանգնեց մեր գլխին և թութունի քսակը հանելով բմբիձաց.

— Ա՛յ որդի, այն տունը, որ երկու թատրոն խաղացող է տվել գյուղին, բա ամոթ չէ՞, որ էդպիսի տան տղան պոռճախներում թրաշվի։ Գնա՛, բալա ջան, գնա Մկրտո-Մանասի մոտ...



# ԳԱԶՆ Է ԳԱԼԻՍ

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Նկ. Յ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Անահիտը դուրս նայեց լուսամուտից և զարմանքով ճչաց.

— Վա՜յ, մեր փողոցը քանդում են։

Վրույրը ցած դրեց գրիչը և վազեց փոքր քրոջ մոտ։

Ներքևում երկու մեքենա, որոնցից մեկը էքսկավատոր էր, փողոցի երկայնքով բաց էին անում խոր ակոս և հողը լցնում այս ու այն կողմ։ Քիչ հեռու, մի քանի մարդ բեռնատար ավտոմեքենաներից ներքև էին իջեցնում մեծ-մեծ խողովակներ ու շարում կողք-կողքի։

— Ինչու՞ են քանդում,— հարցրեց Անահիտը։

— Չգիտեմ,— ուսերը վեր բարձրացրեց Վրույրը և անմիջապես ավելացրեց.— հիմա կիմանամ։

Ասաց և ուզեց դուրս վազել տանից, բայց դռան մոտ հանդիպեց մորը։

— Թվաբանության խնդիրը թողած ու՞ր ես գնում,— բարկացավ մայրը։

Տղան հանկարծակիի եկավ։ Նա չէր սպասում, թե մայրը այդպես շուտ կվերադառնա խանութից և ուզում էր առիթից օգտվելով դուրս ծլկել։

— Մա՛, մեր փողոցն ինչու՞ են քանդում,— դեպի մայրը վազելով դիմեց Անահիտը։

— Երևի նոր ջուր են բերում։

Բայց հետևյալ օրը Վրույրն իմացավ, որ ոչ թե ջրի համար են ակոս փորում և խողովակներ շարում, այլ գազի։ Դպրոցում այդ լուրը տարածել էր Վահեն, որը լսել էր իր ինժեներ հորից։ Մեծ դասամիջոցին Վրույրը տեսավ, թե ինչպես Վահեն իր շուրջն էր հավաքել մի քանի հոգու և ոգևորված պատմում էր այն ամենը, ինչ գիտեր գազի մասին։ Նրա կցկտուր տեղեկությունները բորբոքեցին նաև Վրույրի հետաքրքրությունը, և նա էլ սկսեց հարցեր տալ։ Բայց Վահեն, բացի մի երկու հարցից, մնացած հարցերին չկարողացավ պատասխանել։

— Գյու՜տ, գյու՜տ,— ամբողջ ձայնով մեկ հանկարծ գոռաց ջոկատի խորհրդի նախագահ Սաթիկը։

— Ի՞նչ եղավ, Ամերիկա՞ գտար,— հարցրին այս ու այն կողմից։

— Երկու չէինք կարողանում հավաքույթի համար լավ թեմա ընտրել, դրանից էլ հետաքրքիր թեմա՞։ Վահեի հայրիկին կխնդրենք, որ հավաքույթում պատմի գազի մասին։

* * *

Անցավ մի շաբաթ։

Կեսօրից հետո Երևանի Աբովյան և Մոսկովյան փողոցների խաչմերուկում հավաքվել էին վեցերորդ դասարանի բոլոր աշակերտները։ Նրանք կանգնել էին գազամուղ խողովակների մոտ և ուշադրությամբ լսում էին Վահեի հորը՝ ինժեներ Գրիգորին։

— Ինչպես գիտեք, Երևանի գործարաններից շատերը աշխատում են քարածուխով։ Մեծ քանակությամբ քարածուխ, նավթ և փայտ է հարկավոր նաև քաղաքի բնակիչներին՝ ձմռանը բնակարանները տաքացնելու համար։ Եվ ամբողջ տարին գնացքները մեր երկրի տարբեր ծայրերից Երևան են տեղափոխում հազարավոր տոննաներով քարածուխ, նավթ, մազութ, փայտ։ Շուտով, երբ մենք էլ ընկսենք գազ օգտագործել, վառելանյութի փոխարեն գնացքները հումք կտեղափոխեն գործարանների համար։ Անհամար ծխնելույզներից բարձրացող սև ծուխը հիմա նստում է քաղաքի վրա և բացասաբար ազդում բույսերի ու մարդկանց առողջության վրա։ Գազ վառելու դեպքում քաղաքի օդը միշտ մաքուր ու պայծառ կլինի։ Ձմռանը գազը կտաքացնի բնակարանները, իսկ տարվա մյուս եղանակներին կօգտագործվի գլխավորապես ճաշ եփելու համար։ Եթե առանձին գոր-



ծարաններ դարձյալ աշխատեն քարածուխով, ապա նրանց ծխնելույզներից ծուխ դուրս չի գա։ Քարածուխի այրումից առաջացած ծուխը կմշակվի հատուկ քիմիական գործարաններում ու կդառնա արհեստական մետաքս, մորթի, ներկ, սինթետիկ կաուչուկ և այլ արժեքավոր նյութեր, որոնցից կարելի է պատրաստել զանազան հագուստեղեն, ավտոմեքենայի մասեր, տուն և այլն:

— Ի՞նչ, ծխից հագու՞ստ,— զարմացավ Վրույրը։

— Այո, մի՞թե դուք չեք լսել ծխից ու գազից պատրաստվող մուշտակների և շրջազգեստների մասին: Շատ ժամանակ չի անցնի, և մեր խանութներում վաճառքի կհանվեն այնպիսի մուշտակներ, որոնք կարված կլինեն ոչ թե բնական մորթուց, այլ ծխից։ Եվ այդ մուշտակները իրենց գեղեցկությամբ ու դիմացկունությամբ երբեք չեն զիջի այսօրվա մուշտակներին։ Դեռ ավելին, նրանք կլինեն ավելի գեղեցիկ, էժան ու թեթև։ Մեկ մուշտակի քաշը չի անցնի չորս հարյուր գրամից։ Բայց ավելի հրաշալի նյութեր են ստացվում այն գազից, որը գալու է Ղարադաղից և այս խողովակների միջով մտնելու է մեր բնակարանները ու գործարանները։ Քիմիական գործարաններում մշակվելուց հետո այդ գազը դառնալու է պլաստմասսա, արհեստական մետաքս և բազմաթիվ այլ նյութեր, որոնցից շատ արժեքավոր իրեր կարելի է պատրաստել։ Ոչ մի դաշտում դուք չեք տեսնի այնպիսի բույս, որից պատրաստված գործվածքը չվախենա խոնավությունից, չգունաթափվի արևից և բուժիչ հատկություններ ունենա։ Բայց այդպիսի հումք են լավսանը, էնանտը, նիտրոնը, քլորինը, որոնք անում են քիմիական գործարաններում։ Բնության մեջ որտե՞ղ կարող եք գտնել խցանից ավելի թեթև, ապակու պես թափանցիկ և միաժամանակ պողպատի պես ամուր նյութ: Այդպիսի նյութ ստացվում է միայն քիմիական գործարաններում, որին ծնունդ տվողը դարձյալ գազն է։ Մի քանի տարի հետո խանութները առատորեն կլցվեն գազից պատրաստված գործվածքներով, որոնք և՛ շատ նուրբ են, և՛ շատ գեղեցիկ։ Գործակատարը մեզ կասի. «Խնդրեմ, սա ամենաընտիր մետաքսն է, նիտրոնից է պատրաստված։ Բնական մետաքսից ամենից ավելի սա է նման։ Նիտրոնե շրջազգեստը կեղտ չի ներծծում, հեշտ է լվացվում, արևի տակ չի գունաթափվում և չի վախենում անձրևից»։ Մենք հետաքրքրությամբ կզննենք այդ զարմանալի մետաքսը, իսկ գործակատարը կշարունակի. «Ուզում եք լավսանի գործվածք վերցրեք, դա էլ շատ լավ է. նավթից են ստանում։ Իմ հագի շալվարը դրանից է: Մեկ տարի է հագնում եմ, բայց ոչ մի անգամ չեմ արդուկել։ Կարելուց հետո մի անգամ են արդուկում և վերջ, թեկուզ լվանաս էլ ծալքը չի կորչի»:

Երևանի Պոլիվինիլացետատ գործարանի տված հումքի վրա Կիրովականում աշխատելու է ացետատային մետաքսի ֆաբրիկան։ Այստեղ այնպիսի ամուր մանրաթել է արտադրվելու, որի նմանը գոյություն չունի ո՛չ բնական և ոչ էլ արհեստական թելերի մեջ։ Այդ թելն ավելի ամուր կլինի, քան համապատասխան հաստության պողպատալարը։ Մեկ սանտիմետր հաստություն ունեցող այդպիսի թելը կարող է բարձրացնել տաս հազար կիլոգրամ ծանրություն...

Վրույրը լսում էր ուշադրությամբ և աշխատում բոլորը պահել մտքում, որ պատմի տանը

Բաժինը

վարում է

պրոֆ.

Գ․ԻՏՈՒՆՅԱՆԸ




# ԻՆՉ ԳԻՏԵՆՔ ԼՈՒՍՆԻ ՄԱՍԻՆ

*ՀԱԿՈԲ ՉԱՔՄԻՇՅԱՆ*

Լուսինը մեր Երկրի միակ արբանյակն է, Երկնային ամենամոտ մարմինը: Հնուց մարդիկ զբաղվել են նրա ուսումնասիրությամբ: Լուսինը Երկրի շուրջը պտտվում է էլիպսային ուղեծիրով: Նրա միջին հեռավորությունը Երկրից 384 հազար 400 կիլոմետր է: Այդ հեռավորության վրա կարելի կլիներ տեղավորել 30 երկրագունդ:

Լուսինը սեփական լույս չունեցող գնդային մարմին է: Նրա տրամագիծը 3473 կիլոմետր է: Դա մոտավորապես չորս անգամ փոքր է երկրագնդի տրամագծից: Լուսնի մակերևույթը 14 անգամ փոքր է Երկրի մակերևույթից: Նա մոտավորապես հավասար է Ասիա մայր ցամաքին, իսկ զանգվածով 81 անգամ զիջում է Երկրին: Լուսինը 29.53 օրվա ընթացքում իր առանցքի շուրջը կատարում է մեկ պտույտ: Այդ նույն ժամանակամիջոցում նա մեկ անգամ պտտվում է նաև երկրագնդի շուրջը: Այդ պատճառով էլ մենք տեսնում ենք նրա միայն մեկ կիսագունդը: Պտույտի ժամանակ Լուսինը ճոճումներ է ունենում, և մենք տեսնում ենք Լուսնի ամբողջ մակերևույթի 59 տոկոսը: Դեպի Երկիր ուղղված կիսագնդի մակերևույթը գրեթե հավասար է Հարավային Ամերիկային: Լուսնի միջին խտությունը մեկ խորանարդ սմ-ի վրա կազմում է 3,34 գրամ: Դա բավականաչափ փոքր է Երկրի միջին խտությունից (5.52 գ սմ$^3$) և մոտ է բազալտային լեռնատեսակների խտությանը:

Լուսնի փոքր զանգվածի հետևանքով նրա ձգողության ուժը Երկրի համեմատությամբ վեց անգամ փոքր է: Երկրի վրա 60 կիլոգրամ կշիռ ունեցող մարդը Լուսնի վրա զսպանակավոր կշեռքով կշռվելիս կլիներ 10 կիլոգրամ: Այդ փոքր ձգողությունն է պատճառը, որ Լուսինը վաղուց զրկվել է մթնոլորտից: Լուսնի լեռնատեսակների ցածր ջերմահաղորդականության պատճառով, ցերեկը՝ Արեգակով լուսավորված մասի ջերմաստիճանը 120—130 աստիճանի է հասնում, իսկ գիշերը չլուսավորված մասում տիրում է 150—160 աստիճան սառնամանիք: Լուսնի վրա ջուր չկա: Չեն լինում նաև ամպ և աղջամուղջ:

Լուսնի սկավառակի վրա հասարակ աչքով անգամ կարելի է տեսնել մուգ բծեր, որոնց դեռ 17-րդ դարում «ծովեր», «օվկիանոսներ», «նեղուցներ» և «լճեր» են անվանել: Հետագայում պարզվել է, որ սրանք հարթավայրեր են:

Լուսնի քարտեզում նրանք տարօրինակ անուններ ունեն, Անձրևների ծով, Պարզության ծով, Մահվան լիճ և այլն: Հեռադիտակով նայելիս պարզ երևում է Լուսնի անհարթ մակերևույթը: Նա ամբողջապես ակոսված է լեռներով ու լեռնաշղթաներով: Այստեղ բնորոշ են լեռների օղակաձև խառնարանները, որոնք մի փոքր հիշեցնում են Երկրի հրաբխային խառնարաններին:

Լուսնի ամենաբարձր լեռը Լայբնիցն է, որի մի քանի գագաթների բարձրությունը հասնում է 9 կիլոմետրի:

Լուսնի փուլերի հերթափոխության պատճառը շատերին է հետաքրքրել: Լուսինը սեփական լույս չունի և երբ նա գտնվում է Երկրի ու Արեգակի միջև, դեպի մեզ դարձած կիսագունդը, Արեգակի կողմից չի լուսավորվում, և մենք Լուսինը չենք տեսնում: Դա նորալուսնի փուլն է (տես գծ. 1 դիրք): Աստիճանաբար Լուսինը շարժվում է արևելք և 2 օր հետո երևում է նեղ մանգաղի տեսքով (2 դիրք): Նորալուսնից մի շաբաթ անց Լուսինը անցնում է ¼ շրջան, որը կոչվում է առաջին քառորդ (3 դիրք): Մոտ երկու շաբաթ անց, լուսավոր մասն աստիճանաբար մեծանում է և անցնելով պտտման շրջանի կեսը, գտնվում է Արեգակի դիմաց: Այդ ժամանակ Երկրից տեսանելի է դառնում ամբողջ կիսագունդը (5 դիրք): Դա լիալուսնի փուլն է: Դրանից հետո, Լուսնի տեսանելի սկավառակը

ավելի է փոքրանում և մի շաբաթ անց, Երկրից տեսանելի է լինում Լուսնի ձախ կեսը՝ վերջին քառորդ փուլը (6.7 դիրք): Այնուհետև Լուսնի տեսանելի սկավառակը մանգաղիկի տեսք է ընդունում և ապա դառնում անտեսանելի (8.1 դիրք) և այսպես շարունակ: Մեկ նորալուսնից մինչև հաջորդ նորալուսինը տևում է 29 ու կես օր: Երբ երեկոյան, արևամուտից առաջ երկնքում կիսալուսին ենք տեսնում, պետք է իմանալ, որ դա առաջին քառորդն է: Լիալուսնի ժամանակ նա ծագում է արևամուտի ժամանակ և մայր է մտնում արևածագից առաջ: Վերջին քառորդում Լուսինն ուշ է ծագում և մայր է մտնում արևածագից բավական հետո:

Այժմ տեսնենք, թե ինչպես կարելի է հաշվել Լուսնի փուլը: Հայտնի է, որ Երկրագունդը Արեգակի շուրջը մեկ պտույտ է կատարում 365 կամ 366 օրում, իսկ Լուսինը Արեգակի շուրջը պտտվում է 354 օր և 8 ժամում: Այդ տարբերությունը կազմում է մոտավորապես 11 օր:

Հույն աստղաբաշխ Մետոնը 432 թվականին (մ. թ. ա.) հայտնաբերեց, որ եթե Լուսինն ու Արեգակը իրենց տարեկան շարժումներն սկսել են միաժամանակ, ապա նրանք նույն այդ դիրքում կլինեն 19 տարուց հետո: Լուսնի փուլը հաշվելու համար, նախ հաշվենք տարվա վերադիրը:

$W = \frac{n \cdot 11}{30}$ մնացորդը... (2), որտեղ W վերադիրն է, 30-ը կլորացված ձևով Լուսնի փուլերի կրկնման ժամանակամիջոցն է, 11-ը՝ արեգակնային և լուսնային տարիների տարբերությունը: n-ը, որ ամեն տարվա համար կարելի է հաշվել հետևյալ բանաձևից

$n = \frac{t+16}{19}$ մնացորդը (1) բոլոր դեպքերում բաժանումից ստացված քանորդը հաշվի չենք առնում, վերցնում ենք մնացորդը (t տարեթիվն է): Հաշվենք 1959 թըվի տարվա վերադիրը: Դրա համար նախ որոշենք n-ը $\frac{1959+16}{19}$ մնաց $= \frac{1975}{19}$ մնաց. $= 18$. $n = 18$: Օգտվելով (2) բանաձևից այժմ հաշվենք վերադիրը. $W = \frac{18 \cdot 11}{30}$ մնաց $= \frac{198}{30}$ մնացորդը $= 18$: Տարվա վերադիրը եղավ 18:

Լուսնի փուլը որոշելիս տարվա վերադիրին պետք է գումարել ամսաթիվը և ամսվա հերթական կարգը (հունվար և մարտ ամիսների համար N վերցնում ենք 2, իսկ փետրվարի համար N=3) և գումարը բաժանում 30-ի, բաժանումից ստացված քանորդը դեն ենք գցում: Մնացորդը կլինի Լուսնի հասակը:

$$L = \frac{W+M+N}{30} \text{ մնացորդը՝ } \quad (3)$$

M ամսաթիվն է, N-ը՝ ամսվա հերթական կարգը, L-ը՝ Լուսնի հասակը: Երբ համարիչը 30-ից փոքր է, հենց այդ թիվը կլինի Լուսնի փուլը, երբ հավասար է 30-ի, ապա բաժանման մնացորդը կլինի զերո, նշանակում է նորալուսին է, իսկ երբ համարիչը 30-ից մեծ է, բաժանումից ստացված մնացորդը կլինի փուլի հասակը: Որոշենք 1959 թվականի նոյեմբերի 16-ի Լուսնի փուլը:

Ինչպես նախօրոք հաշվել էինք, տարվա վերադիրը 18 էր.

$L = \frac{18 + 11 + 16}{30} = \frac{45}{30}$ մնաց. = 15՝ լիալուսինը:

Լուսնի ազդեցությամբ Երկրի վրա տեղի է ունենում մակընթացության և տեղատվության երևույթը: Լուսնի ձգողության ուժի հետևանքով Երկրի բաց ծովերի և օվկիանոսների ջրի մակարդակը մշտական տատանումների է ենթարկվում: Օրական երկու անգամ ջրի մակարդակը բարձրանում է՝ դա մակընթացությունն է, և երկու անգամ իջնում՝ տեղի է ունենում տեղատվություն:

Լուսնի ուսումնասիրությունները գիտական մեծ արժեք են ներկայացնում:

1959 թվականի հունվարի 2-ին Սովետական Միությունում Լուս-




*Տիեզերական երրորդ հրթիռում տեղավորված սարքավորումների շնորհիվ առաջին անգամ հաջողվեց տեսնել Լուսնի հակառակ երեսի լուսանկարը:*

նի ուղղությամբ հաջողությամբ տիեզերական հրթիռ արձակվեց: Հրթիռը ուներ բազմաթիվ չափող ապարատներ և գիտական հետազոտությունների տվյալները Երկիր ուղարկելու հատուկ ռադիոհաղորդիչ սարքեր: Հրթիռը Լուսնին հասավ 34 ժամում: Այնուհետև անցավ Լուսնի մոտով և սկսեց պտտվել Արեգակի շուրջը:

1959 թվականի սեպտեմբերի 12-ին հաջողությամբ դեպի Լուսին արձակվեց երկրորդ տիեզերական հրթիռը: Մենք գիտական հարուստ տվյալներ ստացանք Երկրի և Լուսնի մագնիսական դաշտերի, կոսմիկական ճառագայթների, միկրոասուպների և միջմոլորակային գազի մասին: Դա Սովետական գիտության փայլուն հաղթանակներից մեկն էր: Հրթիռի վրա կային վիմպելներ՝ ՍՍՌՄ պետական գերբով և «1959 թվականի սեպտեմբեր» մակագրությամբ: Նախատեսնըված ծրագրին համապատասխան, հրթիռը Լուսնին հասավ սեպտեմբերի 14-ին: Սովետական տիեզերական երկրորդ հրթիռը հանդիպեց Լուսնի մակերևույթին, «Պարզության» ծովից արևելք:




Պուլկովոյի աստղադիտարանի աստղագետ Ն. Ա. Կոզիրևը վերջերս Լուսնի «Ալֆոնս» խառնարանի կենտրոնական գագաթին հրաբուխ նկատեց: Դա վկայում է, որ Լուսինը դեռ լրիվ չի սառել: Հնարավոր է, որ նրա մակերևույթի տակ պահպանվում է համեմատաբար կայուն ջերմաստիճան: Լուսնի մակերևույթը ծակոտկեն կառուցվածք ունի: Ուստի կարելի է ենթադրել, որ նրա ընդերքում ջուր կա, ինչպես նաև թթվածին: Եթե դա այդպես է, ապա հնարավոր է, որ Լուսնի վրա պայմաններ լինեն առավել պարզունակ կենդանի օրգանիզմների գոյության համար:

Այդ պատճառով երկրորդ տիեզերական հրթիռում ձեռք էին առնված մանրէազրկման քիմիական ու ֆիզիկական զորեղ միջոցներ: Դրանք պետք է կանխեին Լուսնի մակերևույթի վարակումը երկրային մանրէներով, որը կըխանգարեր հետագայում ճիշտ լուծելու Լուսնի մանրադիտակային կենդանիների խիստ կարևոր գիտական հարցը:

Սովետական տիեզերական հրթիռները համաշխարհային գիտության պատմության մեջ նոր էջ բաց արին: Եվ հեռու չէ այն ժամանակը, երբ մարդը կթռչի դեպի Լուսին, այն դարձնելով միջմոլորակային ճանապարհորդությունների կայան, ինչպես որ նախատեսնում էր Կ. Է. Ցիոլկովսկին:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ., (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Դ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—11—83, 2—39—06:

ՎՖ 07677. Պատվեր 1139: Տպաքանակ 5800: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 13 XI 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91:
Գինը 2 ռ.

Շապիկի առաջին էջը՝ Լկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

## Երաժշտական խաղեր

### ԵՐԱԺԻՇՏՆԵՐԸ

—Ղրիմի մանկական սանատորիայում մենք երաժշտական շատ խաղեր էինք խաղում,—ասաց իմ դուստրը,—ուզո՞ւմ ես պատմեմ:

—Իհարկե, ուզում եմ, չէ՞ որ երաժշտական խաղերը շատ հաճելի են, հետաքրքիր:

—Խաղերից մեկը կոչվում է «Երաժիշտներ»: Խաղալիս՝ շրջան էինք կազմում: Շրջանի կենտրոնում կանգնում էին մի քանի երեխա: Երբ ակորդեոնիստը սկսում էր նվագել, երեխաներից մեկն իրեն դաշնակահար էր պատկերացնում, մյուսը՝ տրոմբոնիստ, երրորդը՝ թմբկահար, չորրորդը՝ ջութակահար, հինգերորդը՝ փողհար, մի ուրիշն էլ ֆլեյտիստ և այլն: Նրանք նվագի տակտի տակ, ձեռքերն այնպես էին շարժում, իբրև թե նվագում են:

—Հետո:

—Հետո հանկարծ ակորդեոնիստը կտրում էր նվագը: Այդ ժամանակ երաժիշտները շրջանից դուրս էին փախչում, իսկ շրջանում կանգնած երեխաները անմիջապես բռնում էին միմյանց ձեռքերը, շղթա կազմում և թույլ չէին տալիս, որ երաժիշտները փախչեն: Ով չկարողանար փախչել, պիտի պարեր: Մենք էլ ծափ էինք տալիս, ծիծաղում, ուրախանում:

—Դա լավ խաղ է, Անահիտ ջան, միայն խաղացողները պետք է ուշադիր և ճարպիկ լինեն, այդպես չէ՞:

—Իհարկե:

—Իսկ քանի՞ հոգով էիք խաղում:

—20—25 կամ նույնիսկ՝ 30 և 40 հոգով:

### ՆԱՊԱՍՏԱԿՆԵՐ, ՓԱԽԵ՛Ք

—Այս խաղի համար ղեկավարը մեզ կանգնեցնում էր ձեռք-ձեռքի տված զույգերով: Զույգերն էլ այնպես էին դասավորվում, որ տարածվում էր կլոր շրջանով: Ամեն մի զույգի ձեռքերի միջև ընկած տարածությունը համարվում էր մի նապաստակի բույն: Յուրաքանչյուր բնի համար խաղի ղեկավարը մեկական նապաստակ էր առանձնացնում: Նապաստակները կանգնում էին շրջանի կենտրոնում: Երբ սկսվում էր նվագը, նապաստակները սկսում էին թռչկոտել, պարել: Հենց որ լսվում էր սուլիչի ձայնը, նվագը դադարում էր, բոլոր նապաստակները վազում էին դեպի իրենց բները: Խաղի ղեկավարն էլ վազում և մի բույն էր գրավում: Դուրս մնացած նապաստակը կենդանիների ձայներ պիտի հաներ կամ երգեր:

—Որտե՞ղ էիք խաղում, և ինչ տարիքի երեխաներ էին մասնակցում:

—Հրապարակում կամ մեծ սենյակում: Այս խաղերը 5—8-րդ դասարանցիների համար են:

### ՁԵՌՔԻՑ-ՁԵՌՔ

Մի անգամ մեր ղեկավարը երեխաներիս դասավորեց շրջանաձև և մեկին հանձնելով իր ձեռքի կարմիր փայտիկը, ասաց.

—Երբ սկսվի նվագը, փայտիկը տուր քո աջ կողմի կանգնածին, նա էլ՝ մյուսին կտա և այսպես պետք է ձեռքից-ձեռք անցնի:

Նվագն սկսվեց:

Փայտիկը ձեռքից-ձեռք էր փոխանցվում: Մեկ էլ հանկարծ նվագը կտրվեց: Այդ պահին փայտիկը Նելլիի ձեռքին էր:

—Քանի որ նվագը կտրվելու պահին փայտիկը Նելլիի ձեռքին է եղել,—ասաց մեր ղեկավարը,—նա պետք է մի բան կատարի:

—Թող նվագի՛, թող նվագի՛—գոչեցին բոլորը.

Նելլին մոտեցավ դաշնամուրին և նվագեց մեր սիրած երգը, իսկ մենք էլ ձայնակցեցինք նրան:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ



### ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«ՊԻՈՆԵՐ» № 10

ՉԱՅՆՎՈՐԴ-ԱՌԱԾ 1. «Մելանիա». 2. Ավագ. 3. «Դրագը». 4. ընձուղտ. 5. տանկ. 6. Կերես. 7. սագ. 8. «Գիտորը». 9. ընչացք. 10. քասն. 11. Նեկրասով. 12. վանկ. 13. կանեփ. 14. փայտ. 15. Տագանրոգ. 16. գետ. 17. տանձ. 18. ձեթ: «Լավ ընկերը իսկական գանձ է»:

ՎԻԿՏՈՐԻՆԱ 1. 1949 թ. հոկտեմբերի 1-ին. 2. 1950 թ. փետրվարի 14-ին. 3. Շանհայ. Կանտոն. Մուկդեն. Պեկին. Տյանցզին. Վիկտորյա. Չունցին. 4. Ամուր. 5. Տայվան և Խայնան. 6. «Յուխուա». («Բարեկամություն»). 7. Տյանանմին. 8. Ճանճ, մոծակ, մուկ, ճնճղուկ:

